ԱՆԱՏՈԼԻ ՌԻԲԱԿՈՎ



# ԹՎԱԿԱՆԸ ԵՎ ՄՅՈՒՍ ՏԱՐԻՆԵՐԸ

**Թարգմանեց ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆԸ**

Հուլիսի 9-ի երեկոյան Թբիլիսիից զանգահարեց Բերիան.

— Ընկեր Ստալին, այսօր երկրկոմի բյուրոն լսեց Անդրկովկասի Խորհրդային Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետության ներքին գործերի ժողկոմի հաղորդագրությունը Վրաստանում, Ադրբեջանում և Հայաստանում հակահեղափոխական տեռորիստական կազմակերպության բացահայտման մասին: Զգոնությունը կորցնելու համար լուրջ մեղադրանքներ ներկայացվեցին Հայաստանի Կենտկոմի քարտուղար Խանջյանին: Նա կտրականապես ժխտեց դրանք: Երեկոյան, մեկ ժամ առաջ, նա եկավ ինձ մոտ: Իրեն շատ հանդուգն էր պահում: Ինձ մեղադրեց կուսակցական հին կադրերին ջարդելու, կուսակցության պատմությունը նենգափոխելու մեջ: Նա վայրենի, գրգռված վիճակում էր, սպառնում էր ինձ սպանել, և քիչ էր մնում, որ ի կատար ածեր իր սպառնանքը, բայց ես կանխեցի և ինքնապաշտպանության նպատակով գնդակահարեցի նրան:

Ստալինը լռում էր:

— Դուք ինձ լսո՞ւմ եք, ընկեր Ստալին:

— Լսում եմ,— ցածրաձայն պատասխանեց Ստալինը:

Ու նորից լռեց:

Բերիան նույնպես լռում էր:

Վերջապես Ստալինը հարցրեց.

— Ի՞նչ վարկած եք առաջ քաշել ապարատի համար:

— Ինքնասպանություն:

— Իսկ փաստը հրապարակելու համար:

— Ես կարծում եմ՝ նույնը:

— Քանի՞ տարեկան էր:

— Երեսունհինգ:

Ստալինը լռեց, հետո ասաց.

— Վաղը ձեզ մոտ կլինի Կենտկոմի ղեկավար աշխատողը:

Եվ լսափողը վայր դրեց:

Վեր կացավ:

Սկսեց քայլել:

Երկրկոմի քարտուղարը իր իսկ կաբինետում գնդակահարել է հանրապետության Կենտկոմի քարտուղարին:

Կուսակցության մեջ առաջին նման դեպքը:

Իհարկե, Բերիան ինքնապաշտպանության համար չէ, որ արել է այդ բանը: Խանջյանն էլ մահափորձ չի արել, այն մարդը չէ, վատ մարդ է, բայց ոչ այն մարդը, չէր կարող երկրկոմի քարտուղար սպանել, հասկանում է, թե դա ինչով է սպառնում:

Բերիան, իհարկե, ուղղակի գնդակահարել է նրան: Բայց դե ազնվորեն էլ այդ բանը խոստովանում է ԻՐԵՆ: Կարող էր ասել, իբր՝ Խանջյանն ինքն է իրեն սպանել, հետո հավաքել վկաներ, կազմել արձանագրություն: Ամեն ինչ կարող էր: Ոչ, ԻՐԵՆ չէր համարձակվի ճիշտը չասել: Հանցագործ, իհարկե, բայց հավատարիմ հանցագործ:

Անպայման, Բերիայի համար դժվար էր: Անդրկովկասը չէր ուզում նրան ճանաչել, 1931 թվականին գլխավոր քաղվարչության ներկայացուցչի պաշտոնից՝ միանգամից Վրաստանի Կենտկոմի առաջին քարտուղար, իսկ 1932-ից՝ Անդրերկրկոմի առաջին քարտուղար, շարքային չեկիստ, որ նույնիսկ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամ չէր, և այդ ամենը՝ Վրաստանում, ուր կան կուսակցության խոշոր գործիչներ, ՀամԿ(բ)Կ կենտկոմի անդամներ: Օրինակ՝ Մամիա Օրախելաշվիլին՝ կուսակցության անդամ 1903 թվականից, Քարթվելիշվիլին՝ կուսակցության անդամ 1910 թվականից, իրենց համարում են Անդրկովկասի կուսակցական կազմակերպության ստեղծողներ, ու մեկ էլ ահա ինչ-որ Բերիա, քննիչ չեկայից:

ՆԱ Բերիային ավելի մոտիկից ճանաչեց 1931-ին Ցխալտուբոյում հանգստանալիս:

Բերիան, որ այդ ժամանակ Անդրկովկասում ԽՍՀՄ գլխավոր քաղվարչության լիազորված ներկայացուցիչն էր, անձամբ իր վրա վերցրեց ՆՐԱ պաշտպանությունը, [illegible] 250 չեկիստից բաղ-

կացած պահակազորի պաշտպանական եռակի օղակ ու ամիսուկես չէր հեռանում ՆՐԱ կողքից:

Մեկուկես ամսում կարելի է մարդուն ճանաչել: ՆԱ նրան լավ ուսումնասիրեց: Բերիան Անդրկովկասի բոլոր ղեկավարների մասին սպառիչ տեղեկություններ հաղորդեց ՆՐԱՆ, գործակալական ամենամանրամասն տվյալներ: Նրանցից յուրաքանչյուրի մասին ՆԱ իմացավ, թե ով ինչ է խոսել, ինչ է մտածում ԻՐ մասին: Ճիշտ տեղեկացրեց, ազնվորեն, հաստատեց այն, ինչ ԻՆՔՆ անձամբ էր կասկածում: Նրանք բոլորը հակառակորդ են «պատմության վերանայմանը»— այսպես են կոչում նախահեղափոխական Կովկասի պատմության մեջ ԻՐ անցած իսկական դերի հաստատումը: Նրանք, տեսեք-տեսե՜ք, «վկաներ են», տեսեք-տեսե՜ք, «անմիջական մասնակիցներ են»: Բոլոր «հին բոլշևիկներից» նրանք ամենաանընդունելին են, ԻՐԵՆ հավասար են համարում իրենց այնպիսին, ինչպիսին ԻՆՔՆ է, «Անդրկովկասում հեղափոխական պայքարի մասնակիցներ»: Նրանց իսկական մտքերն ու տրամադրվածությունն էլ հենց իր բրոշյուրում արտահայտեց Ավելը: Բերիան ճիշտ հասկացավ, ատամներով բռնեց-ճանաչեց նրանց:

Բերիան իր մասին էլ պատմեց: Մանրամասնորեն: Իսկ ազնիվ, թե անազնիվ՝ դա ոչ ոք չգիտի: Ծնվել է Սուխումի մոտ գտնվող Մերխեուլի գյուղում, սովորել է Բաքվում՝ տեխնիկումում, 1917 թվի մարտին ընդունվել է կուսակցության շարքերը, աշխատել է ընդհատակում: Կուսակցական կազմակերպության հանձնարարությամբ կապվել է մուսավաթիստական հետախուզության հետ: Այդ բանը Բերիան ընդգծեց, անուն առ անուն նշեց Բաքվի կոմիտեի այն բոլոր անդամներին, որ ընդունել են այդ որոշումը, սեղանին դրեց նրանց գրավոր հաստատած փաստաթղթերն այն մասին, որ այդպիսի հանձնարարությունը տրված է իրենց կողմից:

ՆԱ այդ փաստաթղթերը չնայեց, հրեց մի կողմ: Համոզված էր, որ թղթերը կարգին են, այլապես Բերիան դրանք չէր ներկայացնի: Բայց այդ մարդն իր ձեռքում է. կապված է եղել մուսավաթիստական հետախուզության հետ, և երբ գնդակահարում են որպես նախկին պրովոկատորի, արդեն չեն հասցնում ապացուցել՝ իրենց կամքով, թե՞ կուսակցական հանձնարարությամբ են կապված եղել:

Ամեն դեպքում՝ այդ մարդը ծառայել կարող է, կծառայի և գիտի՝ ինչպես ծառայել:

Այնտեղ, Ցխալտուբոյում, ՆԱ որոշեց. Բերիան հենց այն մարդն է, որ Անդրկովկասում կկարողանա գլուխ հանել այդ սնապարծ, կղզիացած արտոնյալներից: Բայց դրա համար նրան պետք է բավականաչափ իշխանություն տրվի: Գլխավոր քաղվարչության ղեկավար պոստից նա չի կարողանա դրան հասնել, այդ պոստում նա լիովին ոչնչացրեց մուսավաթիստներին, դաշնակցականներին ու մենշևիկներին, հաշիվները փակեց տրոցկիստների հետ, բայց Անդրկովկասում կադրային հեղափոխության համար նա պետք է այնտեղ կուսակցական ղեկավար լինի: Միայն այդ դիրքից նա կկարողանա փոխել մարդկանց, ազատվել ոչ պիտանիներից, նշանակել պետքականներին:

Իր Մոսկվա վերադառնալուց անմիջապես հետո, 1931 թվականի աշնանը Կենտկոմ կանչվեցին Անդրերկրկոմի ղեկավարները բոլոր երեք հանրապետություններից՝ Վրաստանից, Ադրբեջանից և Հայաստանից: Օրակարգի հարցը նախապես չէր հայտնվել: ՆԱ խոսեց մեկ ժամ տնտեսության, ազգային հարցերի, էլի ինչ-որ բանի մասին, խոսում էր հանգիստ, ուզում էր ամեն ինչ լավ ու կարգին լինի: Եվ արդեն վեր կենալիս ասաց.

— Իսկ ի՞նչ կլինի, եթե մենք այսպես կազմակերպենք Անդրերկրկոմի ղեկավարությունը. առաջին քարտուղար՝ Լավրենտի Քարթվելիշվիլի, երկրորդ՝ Լավրենտի Բերիա:

ՆԱ տեսավ ներկաների ռեակցիան. նրանք ուղղակի համրացել էին, նստել էին դուրս ցցված աչքերով, նույնիսկ վեր չկացան իրենց տեղերից, թեև ՆԱ արդեն վեր էր կացել:

Եվ միայն ինքը Քարթվելիշվիլին կտրուկ պատասխանեց.

— Ես այդ խարդախի հետ չե՛մ աշխատի:

Ահա այդպես համարձակվեց ՆՐԱՆ պատասխանել Քարթվելիշվիլին՝ Լավրենտի մականվամբ. 31 թվականին նրանք դեռ իրենց շատ բաներ էին թույլ տալիս: Թույլ էին տալիս մեղադրել ԻՐԵՆ, որ ԻՆՔԸ կուսակցական կազմա-


ԱՂԱՍԻ ԽԱՆՋՅԱՆ

կերպության ղեկավար է երաշխավորում խարդախի։

Բոլորը խնդմնդացին՝ և՛ Օրախելաշվիլին, և՛ Մուսաբեկովը, և՛ Բունիաթ-Զադեն և էլի ուրիշներ։ Նույնիսկ երկրկոմի շարքային աշխատողը, կազմբաժնի վարիչ Սնեգովը նույնպես համարձակվեց ծիծաղել։ Նրանց այդ հռհռոցն ԻՆՔԸ չի մոռանա։

Եվ միայն Խանջյանն էր լուռ։ Քար կտրած նստել էր, հասկանում էր, որ ծիծաղելն այդ պահին տեղին չէ։ Խորամա՜նկ։ Իսկ խորամանկ մարդը վտանգավոր է։

Եվ այդ ժամանակ ՆԱ ասաց.

— Դե լավ, վերադարձեք։ Հարցը աշտանքային ձևով կլուծենք։

Իհարկե, ՆԱ իր ուզած ձևով վարվեց։ Լավրենտի Քարթվելիշվիլին (ՆԱ վերջինիս հրամայեց կոչվել միայն Լավրենտե) ուղարկվեց Սիբիր՝ կուսակցական աշխատանքի, իսկ առաջին քարտուղար դարձրեցին Մամիա Օրախելաշվիլուն, երկրորդը՝ Բերիային։

Մի քանի ամսից Օրախելաշվիլուն տեղափոխեցին Մոսկվա՝ որպես Մարքս-Էնգելս-Լենինի ինստիտուտի դիրեկտորի տեղակալ։

Անդրերկրկոմի առաջին քարտուղար դարձավ Բերիան։

Այդ հինգ տարիների ընթացքում նա իրեն լավ դրսևորեց։ Վրաստանի նախկին ողջ ղեկավարության անդամները ուղարկվեցին այս ու այն կողմ՝ ուրիշ կուսկազմակերպություններ, փոխեց բոլոր կուսշրջկոմների քարտուղարներին, թափ տվեց ողջ ապարատը, հաջողությամբ իրագործում է կադրային հեղափոխությունը, անձամբ է ղեկավարում, առանց Յագոդայի և Եժովի, և որպես Անդրերկրկոմի քարտուղար ուղղակի կապ ունի ՆՐԱ հետ։ Յագոդան և Եժովն այստեղ պետք չեն։ Դրությունը Կովկասում ՆԱ և Բերիան ավելի լավ գիտեն։

Ադրբեջանում իր մարդն ունի. Բաղիրովը։ Բաղիրովը Մուսաբեկովի ու բոլոր նրա նման դժգոհների հարցերը լուծեց։ Դժգոհություն, իհարկե, դեռևս կա, բայց շուտով իսպառ կվերանա բոլոր դժգոհների հետ միաժամանակ։

Իսկ ահա Հայաստանը Բերիայի համար դժվար պատառ է։ Խանջյանը՝ ոնց որ ոսկոր կոկորդին։ Խանջյանը չէր ընդունում և չէր էլ ուզում ճանաչել Բերիային. ինչո՞ւ Բերիան և ոչ թե ինքը՝ Խանջյանը, երկուսն էլ կուսակցության անդամ են 1917 թվականից, բայց նա՝ Խանջյանը երկու տարով երիտասարդ է, Բերիան մինչև 1931 թվականը շարքային չեկիստ էր աշխատում, իսկ Խանջյանն արդեն 1921 թվականին Երևանի քաղկոմի քարտուղարն էր, իսկ 1930-ից՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, իսկական կուսակցական կադրային աշխատող է, իսկ Բերիան՝ նշանակված, օրգանից, և, թե ինչու է նշանակված, բոլորին է հասկանալի։ Դրա համար էլ չէր նեղացնում իր հայերին, պաշտպանում էր նույնիսկ իր Լուսավորության ժողկոմ Ստեփանյանին։ Ինչպե՞ս էր անունը՝ Ներսիկին, Ներսիկ Ստեփանյանին, և այն էլ այն դեպքում, երբ այդ շառորդին քննադատության ենթարկեց Բերիայի «Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության հարցի մասին» գիրքը։

Գիրքը Բերիան գրել էր ԻՐ՝ Ստալինի հանձնարարությամբ։ Այն Ավելյա Ենուկիձեի կեղծ հորինումների հերքումն էր, նրանում ճիշտ էր լուսաբանված ԻՐ դերը բոլշևիկյան կուսակցության պատմության մեջ ընդհանրապես և Անդրկովկա-

սում մասնավորապես: Գիրքը զերծ չէր թերություններից, սակայն Բերիան ի՞նչ գրականագետ է: Ասում են՝ ինքն էլ չի գրել: Ի՞նչ նշանակություն ունի: Պետական գիրք է: Բոլորին է դա հասկանալի: Իսկ Ստեփանյանը ծաղրել է այդ գիրքը, տեսեք-տեսե՞ք, քննադատել է կեղծ գիտականության, բազմաթիվ նենգափոխումների համար: Ո՞ւմ դեմ է ելույթ ունեցել Ստեփանյանը: Բերիայի՞: Ոչ՝ Ի՛Ր դեմ, կուսակցության պատմության մեջ ԻՐ իսկական դերի վերականգնման դեմ: Բերիան պահանջեց գնդակահարել Ստեփանյանին, որպես ժողովրդի թշնամու: Խանջյանը թույլ չտվեց: Մեղադրեց Ստեփանյանին, բայց թույլ չտվեց: Թույլ չի տալիս մեկնումեկին ձեռք տալ: Խորամանկ մարդ է, երկերեսանի:

ՆԱ հիշեց, թե ինչպես 32 թե 33 թվականին ԻՐ մոտ՝ Սոչի էր եկել հայերի մի խումբ: Նստեցին, խմեցին: Հետո դուրս եկան պատշգամբ: Արևը եփում էր: Խանջյանը նայեց ՆՐԱ ոտքերին և հարցրեց.

— Չե՞ք շոգում սապոգներով:

Սրիկա՛: Չէ՞ որ դա ԻՐ՝ բոլորի համար սովորական տեսքն է: Առաջնորդի տեսքը: Ժողովուրդը, ողջ երկիրը, ողջ աշխարհը ԻՐԵՆ այդպես է ճանաչում: Հարգալից, կարեկից ժպիտով հարցրեց: Կարծում էր այդպիսով ԻՐԵՆԻՑ կարող է թաքցնել հարցի ծաղրական կողմը: Սրիկա՛:

— Ո՛չ,— պատասխանեց ԻՆՔԸ Խանջյանին,— չե՛մ շոգում: Բայց փոխարենը դրանցով շատ ավելի հեշտ է ատամներ փշրել:

Խանջյանը հարգալից ժպտաց, բայց ամեն ինչ հասկացավ: Եվ, իհարկե, ավելի մեծ թշնամի դարձավ:

Եվ ամեն դեպքում, սեփական կաբինետում գնդակահարել հանրապետության կոմկուսի Կենտկոմի քարտուղարին՝ խելքից դուրս բան է:

Ի՞նչ կատարվեց Լենինի հետ, երբ իմացավ այն ապտակի մասին, որ Օրջոնիկիձեն հասցրել էր Կոբախիձեին: Քիչ մնաց՝ Օրջոնիկիձեին վտարեր կուսակցությունից: Իսկ ինչացո՞ւ էր այդ Կոբախիձեն: Վրաստանի Կենտկոմի սովորական անդամ, դրա հետ միասին՝ ուկլոնիստ:

Լենինը չգիտեր կովկասցու բնավորությունը, լավ չէր ճանաչում Սերգո Օրջոնիկիձեին: Սերգոն կարող է ապտակել, իսկ մի քիչ հետո, նույն այդ մարդու հետ, որին ապտակել է, գինի խմել, գրկախառնվել ու համբուրվել:

Իհարկե, Խանջյանը սրիկա է: Բայց՝ գնդակահարել սեփական կաբինետում, առանց դատ ու դատաստա՞ն...

... Բերիայի՞ն կորցնել:

Ստալինը զանգահարեց, հանձնարարեց իր մոտ կանչել Մալենկովին:

Հայտնվեց Մալենկովը:

Ստալինը մտայլված նրան էր նայում:

Նայում էր երկար:

Եվ Մալենկովը հասկացավ. Ստալինը կամ ինչ-որ բանից դժգոհ էր, կամ լուրջ հանձնարարություն էր տալու:

Առանց նստել առաջարկելու, քայլելով կաբինետում, ասաց.

— Այսօր Բերիայի կաբինետում ինքնասպան է եղել Խանջյանը: Չի կարողացել տանել զգոնության կորուստի պատճառով իրեն ներկայացվող մեղադրանքների ծանրությունը: Ինքնաթիռ պատվիրեք և առավոտյան թռեք Թիֆլիս: Հետևեք, որ ամեն ինչ հանգիստ ընթանա:

Նա լռեց: Հետո ավելացրեց:

— Եվ գլխավորը՝ հաղորդեք Բերիային. այն ամենը, ինչ նա այսօր առավոտյան ինձ ասաց հեռախոսով, թող գրի, ստորագրի, դնի ծրարի մեջ, զմռսի, կնքի և տա ձեզ ինձ բերելու համար: Դուք, երբ վերադառնաք, անձամբ ինձ կտաք: Այն, ինչ-որ գրի Բերիան, ոչ մեկին հասցեագրված չպետք է լինի, ո՛չ ինձ, ո՛չ մեկ այլ մարդու: Միայն փաստերի շարադրանք և ստորագրություն: Վերջ: Կատարեք:

Դռան մոտ Ստալինը ասաց.

— Բերիայի հետ համաձայնեցրեք Հայաստանի ղեկավարության նոր կազմը: Այդ հարցը վերջնականապես կլուծենք ձեր վերադարձից հետո: Աշխատեք վաղը չէ մյուս օրվա առավոտյան այստեղ լինել:

Երկու օրից Ստալինը բացեց Մալենկովի բերած ծրարը: Բերիան ամեն ինչ արել էր այնպես, ինչպես ՆԱ էր կարգադրել, մանրամասնորեն շարադրել էր այն իրադրությունը, թե ինչպես է ինքը գնդակահարել Խանջյանին: Անհասցե նամակ: Որևէ բանով չէր ակնարկել հեռախոսային խոսակցությունը Ստալինի հետ և ՆՐԱ անունը նամակում չէր հիշատակել:

Ստալինը Բերիայի նամակը դրեց իր անձնական սեյֆը:

ՐԱՖՖԻ ՔԵԴԱՊՃՅԱՆ

# ԱՌՅՈՒԾՆԵՐԸ



Նկարը՝ ԼԱՍԱ ԴԵՎԼԻԿՆՑԻ

Սով կար առյուծներու երկրին մեջ: Լայնատարած արոտավայրերը, որոնք ատենին լեցուն էին համույրներով, վագերաձիերով և այլ համեղ կենդանիներով, հիմա պարապ էին, պապարապ:

Ատենով անգտանելի դարձան նաև մուկերը իրենց գիրուկ զիստերով, կլորիկ փորիկով և մոտ այտերով: Փոխարեն մեծցավ հալած զիստերով, ներս ինկած փորով, սնամեջ այտերով առյուծներուն թիվը: Եվ անհրաժեշտ եղավ այն, որ աներևակայելի էր ցարդ՝ գումարել խորհրդաժողովը առյուծներուն: Եկան բոլորը՝ անոնք, որոնք կրցած էին վերապրել, և բոլորը կհետաքրքրվեին մեկ հարցով. ինչպե՞ս կրնային ապահովել իրենց գոյատևումը, գտնել միջոցներ՝ առաջքը առնելու համար սովամահին: Եղան փայլուն առաջարկներ, սրամիտ լուծումներ, որոնք անգամ մը ևս փաստեցին այն միտքը, որ հայտնի է շատ քիչերուն միայն, թե առյուծները ոչ միայն շատ քաջ են, այլ նաև տեր՝ վառ երևակայության: Այնպես որ, առյուծները ամենամեծ հանդարտությամբ մտիկ ըրին ներկայացված բոլոր առաջարկները, մինչև որ Առյուծ Պետրոսը, որ ծանոթ էր իր համեստ կարողություններով թե մարմնային և թե մտային, հանկարծ ոտքի ելավ և ըրավ հետևյալ առաջարկը: Մեր փրկությունը, ըսավ Առյուծ Պետրոս՝ հայրը Առյուծ Արամին, Քաղաքն է: Ի՞նչ, բացականչեց Առյուծ Հեկտորը, ամենաքաջը առյուծներուն սարսափահար, Քաղա՞ք, մարդո՞ց քով: Եվ իր երբեմնի փառքին վերջին վըկան՝ իր փառավոր պեխին վերջին թելը վար ինկավ: Անկարելի է հոս քանի մը տողով վերարտադրել այդ կրքոտ կարծիքներու փոխանակությունը, որ տեղի ունեցավ: Միայն այդքանը ըսենք. մեծամասնությամբ որոշվեցավ Առյուծ Պետրոսը և իր տղան Առյուծ Արամը ղրկել Քաղաք իբրև պատվիրակ:

Երբ տաժանելի ճամփորդությունե մը վերջ հայր ու տղա Քաղաք հասան, ան գրեթե պարապ էր: Պարապ էին գրեթե բոլոր փողոցները, և անոնք, որոնք պարապ չէին, պարպվեցան շուտով: Ահա, ըսավ հայրը հանկարծ, մեր փնտռածը հոս է: Մսավաճառի մը խանութին առջև կկենային: Ցուցափեղկին մեջ կախված էին միսի խոշոր կտորներ, որոնք մուկերեն զգալիորեն ավելի մեծ էին: Մեզի միս, ըսավ հայրը իր ամենաքաղցր ձայնով: Մսավաճառը փութաց պատրաստել հսկա ծրար մը, լեցուն միսի ամենահամեղ տեսակներով: Մյուս հաճախորդները, որոնք իրենցմե առաջ մտած էին խանութ, սիրահոժար հեռացած էին, հոր և տղուն գնումին արգելք չհանդիսանալու համար: Հայր ու տղա բեռնավորված իրենց

հսկա ծրարով անցան նույն պարապ փողոցներեն և գացին հանրապարտեզ: Հոն գտան նստարան մը, որուն վրա կնըստեին մարդիկ: Նույն սիրահոժար կեցվածքը, որուն վկա եղած էին մսավաճառին խանութը, կրկնվեցավ հոս: Նստարանը պարպվեցավ իսկույն, և հայր ու տղա նստած ծառերուն շուքը, կերան միսը, որ զգալիորեն ավելի համեղ էր մուկի միսե: Նույնիսկ, ըսավ հայրը իր տըղուն, աս ավելի համեղ է համույրի և վագերաձիի միսե: Եվ այդ ըսած պահուն զղջաց այդքան ուշ Քաղաք եկած ըլլալուն համար: Վազվզելով անցած էր իր կյանքը, նախ համույրներու և վագերաձիերու, վերջը՝ սովին ատենը մուկերուն ետևեն: Որքան անհիմն էին մարդոց մասին իրենց ունեցած նախապաշարումները— հոս հայր առյուծը միսի ջղուտ կըտոր մը մուկի մը մեծությամբ, որ անհանգիստ կներ զինքը, գետին թքավ: Օգնելու պատրաստ էին անոնք և քաղաքավար, այնպես չէ՞ր: Միայն ժպտերես պետք է ըլլալ, ինչպես որ ան եղած էր:

Օրեր, շաբաթներ անցան: Հայր ու տըղա գիրցան, վերագտան իրենց երբեմնի փառքը, ավելին՝ այնքան գիրցան, որ հազիվ կրնային շարժիլ իրենց տեղեն: Այսուհանդերձ շարունակեցին երթալ մսավաճառին խանութը: Միշտ չէ, որ նախապատվություն կու տար իրենց մսավաճառը, կարգ մը հաճախորդներ պատրաստ չէին իրենց կարգը տալու երկու առյուծներուն: Նույնիսկ սովորություն դարձած էր ժամերով սպասել երդալեն պզտիկցող միսի ծրար մը ստանալու համար, որուն մեջի ոսկորներուն համեմատությունը գլխապտույտ առաջացնող թափով կշատնար: Եվ այս բոլորը հակառակ հոր քաղցրաքաղցր ժպիտին, որ շատերու ըսածին համաձայն երդալեն մարդկային ժպիտի կընմաներ: Փողոցներն ալ սկսած էին լեցվիլ հիմա, նախ վարանոտ: Մարդիկ ավելի համարձակորեն կմոտենային անոնց, կդիտեին զանոնք մեծ-մեծ աչքերով, կդիպչեին անոնց, կզարնվեին և կկոխեին անոնց պոչերուն, թաթերուն վրա միտումնավոր կերպով:

Օրեր, շաբաթներ անցան: Հայր ու տղա նիհարցած էին, ստամոքսնին հազիվ լեցուն էր ոսկորի կտորներով, որոնք հանրապարտեզին մեկ անկյունը կուտեին: Նստարան տվող չկար անոնց այլևս: Ոչ ալ ոսկոր, ինչպես որ պատահեցավ քանի մը օր վերջ: Ժամերով սպասած էին նորեն, և բոլոր հաճախորդները գացած էին տուն: Խանութը գոցվելուն վրա էր: Մսավաճառը նայեցավ անոնց, առանց բառ մը ըսելու մոտեցավ, բռնեց անոնց վիզեն և կիցով մը դուրս նետեց երկու առյուծները: Ակնթարթի մը համար հայր առյուծը իր անցյալը հիշեց, երախը բացավ, այդ երախը, որ սարսափ կպատճառեր արոտավայրին բոլոր կենդանիներուն, և սկսավ լալ բարձրաձայն:

Անոթի փորով թափառեցան փողոցներն ի վար, առանց ուրիշ մսավաճառի մը խանութեն ներս մտնելու: Գրգռող ըստամոքսով երկնցան հանրապարտեզի թուփերեն մեկուն ետևը: Կես գիշերը շատոնց անցած էր, և դեռ չէին քնանար: Վերջապես պզտիկ առյուծին քունը տարավ: Քնացավ խորունկ և երազեց իր մանկության օրերը, արոտավայրը, համույրները, վագերաձիերը և մուկերը:

Երբ արթնցավ հայրը քովը չէր: Իրեն ծանոթ և անծանոթ բոլոր փողոցներեն, մսավաճառի խանութներեն անցավ հայրը գտնելու հույսով: Չկար, չգըտավ: Տակնուվրա ըրավ բոլոր հանրապարտեզները, բոլոր հրապարակները, վերջապես վերջին հրապարակին վրա— հույսը գրեթե կորսնցուցած էր— տեսավ մեծ վրան մը, շուրջը բազմաթիվ վանդակներ՝ զանազան կենդանիներով լեցուն: Վանդակներեն մեկուն մեջը տեսավ իր հայրը, առջևը խոշոր ոսկոր մը: Հայրը հոգնած ըլլալ կթվար, աչքերը երազկոտ էին, չնշմարեց անգամ իր տղուն ներկայությունը: Վանդակին խավաքարտի կտոր մը փակցված էր: Վրան հետևյալը. Ահավասիկ առաջին առյուծը, որ ինքնաբերաբար եկած և մտած է վանդակ:

Սարսափահար փախան մարդիկ աջ ու ձախ՝ հսկա ոստումներով իրեն ճամբա բացող փոքրիկ առյուծեն, որ նույն ատեն կգոռար ահարկու ձայնով մը: Անոնք, որոնք կրցան տեսնել փոքրիկ առյուծին երեսը՝ հոն նշմարեցին գոհունակ արտահայտություն մը: Ուրիշներ տեսան իր հեռանալը, հեռանալով դուրս ելլելը Քաղաքեն, անտեսանելի դառնալը հորիզոնին վրա: Ոչ ոք տեսավ զինքը անկե վերջ, նույնիսկ մսավաճառը:

Վազե, փոքրիկ առյուծ, վազե: Վազե, թերևս օր մը պիտի հասնիս քու երկիրդ, ուր առյուծները չեն լար ու չեն մուրար, այլ կգոռան ու կհափշտակեն այն, զոր ուտել կուզեն:



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Ճիչ մարդկային

### Մ Ո Ւ Տ Ք

Էյ հե՜յ, լսեցեք,
Նորահայտ, նվաստ բանաստեղծիս
ձայնը ահարկու,
Ականջ արեք իմ խոսքերին,
Ձեզ եմ դիմում.
Եվ քեզ, Նոտր-Դամում աղոթող
Ով պճնամոլ տիկին,
Եվ քեզ, օտարության մեջ դեգերող
Հակոբի որդի,
Եվ քեզ, Մարսի վրա
Ու Երկրի ընդերքում տառապող ով
Ադամորդի...
Ականջ արեք նվաստիս ձայնին ահարկու,
Եկեք-հավաքվենք, խորհրդի նստենք:

### Ա

Մեռնում է դարը:
Շատ է տառապել, շատ հին ու նոր,
Տաք ու սառը բաներ է տեսել՝
Պատերազմներ համաշխարհային,
Տիեզերք ու ատոմ,
Հանճարներ բազում ու եղեռն, եղեռն,
եղեռն...
Ու դրանից էլ ծերացել է նա,
Կորացել է, ջարդվել մեջքը:
Մնացել է ընդամենը տասը տարի,
Ու կշռջի պատմությունը
Իր այս թերթն էլ,
Եվ հոգս ու ցավերով,
Ուրախության ճիչերով բեռնավորված
Մեր օրերը
Մոռացության փլատակների տակ կմնան:
Տասը տարի է մնացել:
Շա՜տ է, կարծում ես, վայրկյան է մի,
Մի ակնթարթ, որ էլ հետ չես բերի:
Կանցնի այնպես, ինչպես պապդ է
աննկատ մեռել,
Ու դուք արցունք չեք թափել:
Մնացել է տաս տարի:
Հազար, երկու հազար տարի հետո
Մարդիկ կպեղեն
Ու ներողամիտ ժպիտով կհայտնաբերեն,
Որ մենք շրջել ենք... ավտոմեքենայով,
Որ մենք օգտվել ենք... հաշվիչ
մեքենայից
Եվ Երկրից մինչև Մարս մի քանի տարում
ենք հասել...
Կանցնի տաս տարին,
Կանցնի և հազար տարին,
Կփոխվեն մարդիկ,
Կփոխվեն շոր ու կոշիկ-գլխարկները,
Բայց հողը,
Հողը կմնա նույն հողը,
Հոգին՝ նույն անքննելին, գաղտնիքն,
Անսպասելին,
Նույն պղտորն ու նույն անեղծը,
Հայրենիքը դարձյալ նույն հպարտ
Սրբությունն է մնալու:
Մնալու է: Մնալու են: Եվ կամ
կփոխվեն:
Իսկ մինչ այդ դեռ հազար տաս տարի
Ժամանակը կաթելու է
Նույն միապաղաղ, նույն անակնկալ
կաթիլներով:
Իսկ մինչ այդ դեռ պետք է մեռնի մի դար,
Որը կարգ ու կանոն պաշտող մարդիկ
Հաշվառել ու գրանցել են՝ համար
քսաներորդ:
Ու դեռ նա պիտի մեռնի:
Դարը պիտի մեռնի: Իր բնական մահով:
Բայց ոչ երբեք ստրեսից, վթարից,
Եվ որ սարսափելի է առավել՝ պայթյունից,
Դրա համար մեր օրակարգում
Որպես առաջին հարց առաջարկում եմ
գրանցել.
«Դարի բնական մահը»:

### Բ

Մարդն առաջացել է որպես կենդանի
Ու հնարավորություն էլ չի ունեցել
մտածելու,
Որ մի օր... մարդ պիտի դառնա:
Չէր մտածել, բայց դարձավ:
Դարձավ: Այնպես դարձավ,
Ինչպես որդին է մեծանում,
Տան տերը դառնում:
Ու մի օր էլ նա զարմացած նայեց իրեն
Ու... ու ամաչեց:
Հենց այստեղ էլ մարդը իմացավ,
Որ... կենդանի չէ, մարդ է դարձել:

Հետո մարդն աշխատեց,
Իր աշխատանքով վաստակեց հացն իր:
Բայց և որքան աշխատում էր,
Այնքան ավելի էր խոր ճանաչում
Ինքը իրեն, ընկերուհուն-ընկերոջը,
Ըմբռնում էր շրջապատի էությունը:
Ճանաչում էր: Աշխատելով էր ճանաչում:
Ու թե աշխատանք կա, կա և հանգիստ:
Ու մարդը հանգստանում էր, վայելում
Իր իսկ ստեղծած բարիքները:
Բայց և հենց այդ հանգստի ժամերին էր,
Երբ նկատեց մարդը, որ ինքը... մենակ է:
Ճիշտ է, մարդը չվախեցավ
(Նա քաջ էր արդեն),
Սակայն որպեսզի պարապությունից
չձանձրանա

Ու դատարկություն չզգա թիկունքին,
Մարդն իր համար հեքիաթներ հյուսեց,
Աստվածներ ստեղծեց,
Եվ արձաններ կերտեց,
Վանք ու մեհյաններ կառուցեց:
Եվ այս ամենն այն նպատակով սոսկ,
Որ իր թիկունքին ու կողքին
Դատարկություն չզգա...
Ու ինքն էլ... հավատաց իր ստեղծածին:
Բա էլ ի՞նչ աներ: Կամ ի՞նչ էր մնում
անելու:

Երևի թե՝ ոչինչ:
Իսկ մենք այսօր պեղում
Ու ներողամիտ ժպիտով հայտնաբերում
ենք

Կործանված այդ աստվածների
Արձանների բեկորները,
Եվ ժամանակից սարսռալով
Ականածանքով հպում մեր ձեռքերը դրանց,
Որ ժամանակի անդունդը հաղթահարվի:
Իսկ մենք, որ այսօր մեզ գիտակից ենք
համարում,
Մեզ կոչում ենք մարդու
կա-տա-րե-լա-տիպ,
Այսքան հեքիաթների ու աստվածների
մեջ

Պետք է մի նոր հեքիաթ հյուսենք,
Մի նոր աստված ծնենք
Եվ տարածենք մի նոր ուսմունք,
Ըստ որի Մարդն է մարդու նոր
աստվածը,

Մարդն է մարդու թիկունքն ու օգնականը:
Եվ քանի որ խորհրդի եմ հրավիրել ձեզ,
Եվ մարդիկ սիրում են խիստ ձևակերպում,
Այդ դեպքում, գրիչ իմ թանկագին,
Իմ մտերիմ-ստրուկ քարտուղար,
Օրակարգի երկրորդ հարցը գրանցիր
այսպես.
«Մարդն է Մարդու նոր աստվածը»:
Գ.
Նա մի անուն չունի,
Տարբեր տեղերում նրան տարբեր
անուններ են տրվ

Իսկ նա քաջ է եղել,
Համբերատար է եղել հայից առավել,
Երկաթից ամուր է եղել հաճախ,
Իսկ երբեմն էլ ճմռթվել է թղթի կտորի
պես:
Իսկ երբեմն էլ ճմռթվել է թղթի կտորի
Կեղտոտ շան ձագի պես
Ճահիճ ու մրջուր է մտել
Ու մերթ էլ հրեշտակների պես խայտացել
է երկինքներում:
Բայց և հաճախ խաթարվել ու
խեղվել է
Ու հազվադեպ՝ մեռել տառապանքներից:
Նա ջերմացնողն է մեր մսե վառարանի,
Նա իմաստն է մեր գոյության:
Նա... նա հոգին է...
Մեր այսօրվա խորհրդի երրորդ ու
վերջին

Հարցն էլ ահա այս է.
«Հոգին չպետք է խեղվի»:
ԵԼՔ
Ահա, իմ բարեկամ, ես,
Բանաստեղծ-նվաստս վերջին,
Բայց և տիրակալն այս փոքրիկ
տերության,
Ես, որ կանչել էի ձեզ խորհրդի,
Արձակել եմ իմ երեք
Հրաման-հանելուկ-հարցերը:
Գնացեք, մտածեք բոլորդ անխտիր.
Թե դու, ո՛վ պճնամոլ տիկին՝
Նոտր-Դամում աղոթող,
Թե դու, ըմբոստ Հայկի տառապած որդի,
Եվ թե դու, Մարսի վրա
Ու երկրի ընդերքում տառապող
Ադամորդի:

Գնացեք, տասը տարի ձեզ ժամանակ,
Քանի դեռ դարն այս մահամերձ է դեռ.
Ու դեռ չի զարթնել նոր դար-տիրակալը:
Ձեզ տասը տարի ժամանակ,
Ի՞նչ է, կարծում եք, տասը տարին շա՞տ
է:

Չէ, քիչ է, շատ քիչ, վայրկյան է մի,
Մի ակնթարթ, որ հետ չի սիրում դառնալ:

ՀՈՎԻԿ ՀՈՎԱԿ
Երևան, № 112 դպրոց, 10-րդ դասարան



# ՍԵՎԱՆԻ ՀՆԱԴԱՐՅԱՆ ԱՆՏԱՌՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լուսանկարը՝ ԱՐՄԵՆ ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆԻ

Հրապարակված են Սևանի առափնյա հողերի քննության արդյունքները, որից երևում է, որ հնում Սևանի ափին եղել են բարձրաբուն ծառերից կազմված անտառներ: Այդ բանի մյուս ապացույցն այն է, որ լճի հատակից գտնվել են եղջերուների մեծ քանակությամբ եղջյուրներ: Այս ամենին ցանկանում ենք ավելացնել ուղակի ապացույցներ: Բանն այն է, որ մենք գտել ենք նույնիսկ Սևանի անտառներից բերված գերաններ: Ով ցանկանում է իմանալ, թե ինչպիսի ծառեր են եղել լճի հյուսիս-արևմտյան՝ ներկայիս ծառազուրկ ափին, թող գնա Ցամաքաբերդ գյուղը և մտնի Զոհրաբ Դավթյանի հին տունը: Այդ տան առաստաղի խոշոր

և ամուր գերանները Ջոհրաբի պապը բերել է Մաշտոցների անտառից: Մաշտոցներ տեղացիները անվանում են Սևանա կղզու և «Աղթամար» հյուրանոցի միջև գտնվող այն լեռնալանջն իր ձորակով և գոգավորությամբ, որ ընկնում է Դիլիջան տանող ճամփի ձախ կողմը: Այստեղ մի մատուռ կա, ուր 10-րդ դարում ճգնել է Մաշտոցներ հայրապետը, ուստի և տեղացիները նրա անունով են կոչել այդ վայրը: Մատուռի շրջակայքը մերկ է, ինչպես և մերկ են առհասարակ այդ կողմի լեռները, բայց ցամաքաբերդցիք այդ լերկ լանջերն այսօր էլ Տանձուտ են անվանում, որ ցույց է տալիս, թե այդտեղ մի ժամանակ վայրի տանձենիների պուրակ է եղել: Ահա այդ Տանձուտից է, որ ցամաքաբերդցի Ջոհրաբի պապը կաղնի ծառեր է կտրել և նրանց գերաններով կառուցել իր տունը:

Առաջին ցամաքաբերդցիք, որ գյուղացի Վանուշ Խաչատրյանի պատմելով, սկզբում եղել են 7 տնտեսություն, ներգաղթել են հին Բայազետից, 1828 թվականին հաստատվել են կղզու դիմացի ափին և տեղական անտառի շինանյութով կառուցել են իրենց թոնրատները, որոնց առաստաղները կազմված էին բազմաթիվ կաղնի գերաններից:

Ահա անմիջական ապացույցն այն բանի, որ դեռևս անցյալ դարի առաջին կեսին կղզու դիմացի ներկայիս լերկ լանջերին եղել են հաստաբուն կաղնիներից և տանձենիներից կազմված անտառակներ՝ կղզյակներով մնացած այն անտառներից, որոնք ավելի հնում համատարած կերպով պատել են Սևանի արևմտյան լանջերը:

Վերջին տարիներս Ծամաքաբերդի մոտ և կղզու եզրին՝ իջած Սևանի ավազների մեջ գտնվել են վարազի ժանիքներ, մի բան, որ նույնպես ցույց է տալիս, թե այդ վայրերում կաղնուտներ են եղել, քանի որ առանց կաղնի դժվար է պատկերացնել վայրի խոզերի գոյությունը:

Եվ, վերջապես, հարևան Գոմաձոր գյուղի թիկունքի սարի հանդարտ լանջը, որ նայում է Ծաղկունքին, մինչև օրս էլ Արջանոց է կոչվում, թեև այնտեղ արջի գոյության համար ոչ մի պայման չկա. ոչ ծառ, ոչ թփուտ, ոչ անտառ: Կես դար առաջ, երբ գոմաձորցիք հերկեցին երբեք խոփ չտեսած այդ լանջը, մեր բարեկամների հետ միասին ես նույնպես մասնակցեցի հերկին ու կարտոֆիլի ցանքին, ապա և բուկլիցին ու բերքահավաքին և դեռ այն ժամանակ պարզ տեսնում էի, որ այդ հողը նույնն է, ինչ իմ ծննդավայրի անտառային բացատների հողը՝ սևահող, որ առաջացել է անտառի տերևների փտվածքներից: Որպես անտառում մեծացած և անտառի հողը իմ ձեռքով մշակած պատանի, տեսնում էի, որ թեև տեղում անտառ չկա, բայց հողն ու նրա տված բերքը անտառի են: Եվ ահա դրան ավելացրած Արջանոց անունը: Պարզ չէ՞, որ հնում այդ լանջը պատած է եղել անտառով, որի մեջ ապրում էին արջեր, այն էլ այնպիսի քանակությամբ, որ անտառը արջանոց է դարձել... (Այս տողերը գրելուց տարիներ անց Ծամաքաբերդի հանդում, ասածս Արջանոցից ոչ հեռու արջի գանգ գտնըվեց, որ այժմ պահվում է Ակադեմիայի կենդանաբանական ինստիտուտում):

Ինչո՞ւ այսքան խանդոտ կերպով անտառների հետքեր ենք փնտրում Սևանի այն ափերին, որոնք այժմ լերկ են: Հասկանալու համար, թե ինչ կենդանական աշխարհ կարող էր ունենալ Սևանի ավազանը հազարամյակներ առաջ: Հասկանալու համար, թե նախաուրարտական ցեղերի դամբարաններից այժմ հանվող անտառաբնակ կենդանիների արձանիկները բնօրինակությո՞ւնն են տեղական բնության մեջ, մարդկանց շրջապատում մի ժամանակ եղած կենդանիների, թե՞ ներմուծված են դրսից: Եվ, վերջապես, հաստատելու մի հետաքրքրական և զարմանալի երևույթ, որ առայժմ Հայաստանում է նկատված. թե ինչպես անտառների կործանումից հետո նրանց բնակիչներից մի քանի տեսակներ՝ ինչպես օրինակ, լուսանը, գորշուկը կարողացել են հարմարվել անտառազուրկ վայրերին հատուկ պայմաններին: Ո՞ւր է տեսել, օրինակ որ լուսանը բնակվի հրաբխային քարակույտերի մեջ: Մեզ մոտ ապրում է: Բայց այդ մերկ ու քարքարոտ վայրերում այսօր լուսանը չէր բնակվի, եթե այդ նույն վայրերում հազարամյակներ առաջ չլինեին անտառներ, որոնք իրենց թավուտներում թաքցնում էին այդ գազանին և պայմաններ ունեին նրա գոյության համար:

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

«Հայաստանի կենդանական աշխարհը» անտիպ հատորից

ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆ

## Առաջին ձյունը

Ձյունն է իջնում շորորալեն՝
արծաթաթև, փաթիլ-փաթիլ։
Շրշընջում է.— Մոլորյաներ,
իմ գալստյան տոնի առթիվ

սեղան բացեք, հացեք ժպիտ,
հացեք սիրուն շոր ու զարդեր...
Ես եկել եմ՝ որ ձեր անմիտ
տառապանքից ձեզ ազատեմ։

Արծաթաթև, օրոր-շորոր
ես երկնքից իջա ներքև,
որ ընծայեմ ճերմակ մի օր
ու ձեզ նախկին ժամից փրկեմ։

Ձյուն եմ թեթև. աննըշան եմ.
ջուր՝ իմ եղած ու չեղածով։
Փաթիլ եմ. թույլ մի նշանն եմ
ձեր երկնքի ու աստըծո։

Ես նշանն եմ իմ առաջին
և երկնքից իջա ներքև,
որ ընծայեմ ձեր ականջին
մաքրագիր ու զվարթ երգեր։

## Օրն է բացվել

Օրն է բացվել։ Օր է կյանքի
այստեղ ու ողջ մյուս ծագերում։
Փողոցներում ու բակերում
լույս է ցնծուն խրախճանքի։

Օրն է բացվել։ Օր է հույսի
ու երազի տևողության։
Ես՝ որ ունեմ հստակ մի ձայն,
կառչել եմ այս զվարթ լույսից։

Օրն է բացվել։ Օր է մանկան
ու ծնողաց ուրախության։
Ես՝ որ ունեմ զուլալ մի ձայն,
դեռ պղտոր եմ, սակայն դեռ կամ։

Օրն է բացվել։ Օր է ծաղկի
ու մարդկերանց ազատության։
Նա՝ ով տվեց ինձ ազատ ձայն,
ներել է ու էլ չի ձաղկի։

Օրն է բացվել։ Երանելին
ու մարդկերանց ազատության։
Եվ մատաղն իմ պակասավոր
համարում է ընդունելի։

## Հայոց հարցը

Այս զգայուն մազե ճոպանն
ինչպե՞ս է, որ մեզ դիմացավ։
Սևագիր ու խամուխռպան
մեր մտքերը ո՞վ իմացավ։

Ոչ ոք։ Ոչ ոք ոչ մի անգամ
չի հայտնըրվել մեր վիճակում։
Բայց... իրենք են մեր ապագան
կանխատեսում ու վիճարկում։

## Դարձյալ մենք

Մենք չենք խնդրել ողորմություն
ոչ մի անգամ անարժանից։
Մենք պարտք չենք, բայց չունենք պրծում
թալանչիից ու խուժանից։

Դարձյալ մենք ենք ապաշխարում...
Դարձյալ իրենք եղան ներող...
Դարձյալ մենք ենք այս աշխարհում
ապրում աստծո փշրանքներով։

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# «ՁԵՂՊԵՄՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ...»

## ԲԻԹԼԻՍՑԻ ՄՈՒՇԵՂ
(1869—1899)

ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Մուշեղը ծնվել է Բիթլիսում (Բաղեշ-Սալնո ձոր), որը սկսած 1882 թվականից վիլայեթի վարչական կենտրոնն էր՝ վաճառականական - արհեստավորական քաղաք: Չնայած այդ քաղաքի վաճառականների մեծ մասը խուսափում էին հայ ազգային-ազատագրական շարժումներին մասնակցելուց, սակայն թուրքական ոստիկանությունը շատ հաճախ նրանցից ոմանց բանտարկում էր և մեղադրում այդ շարժումներին մասնակցելու մեջ և նրանցից մեծ քանակությամբ ոսկի կորզում: Այդ պատճառով էլ Սալնո ձորը ժողովրդի կողմից ստացել էր «ալթըն դերեսի» (ոսկյա ձոր) անունը: Քաղաքը ուներ 4 թաղ, որոնցից երկուսում՝ Թաղի գլուխ և Ավեր մեյդան, հայերը մեծամասնություն էին կազմում: Քաղաքում ապրում էին նաև թուրքեր, քրդեր, թուրքմեններ և այլ ազգերի ու ժողովուրդների ներկայացուցիչներ:

Մուշեղը իր սկզբնական կրթությունը ստանում է քաղաքի բողոքականների վարժարանում: Մի օր նա ականատես է լինում մի դեպքի, որի ժամանակ երկու թուրքեր դաժանաբար ծեծում են մի հայի: Վրեժով լցված դեպի խեղճ հային ծեծողները, նա հաջորդ օրը հրդեհում է նրանց տները: Քննությունից հետո թուրքական իշխանությունները որոշում են նրա հոր՝ Ղպեյան Համբարձումի տունը հանձնել այդ թուրքերին: Այս դեպքից շատ չանցած՝ նրա հայրը մահանում է: Անհնազանդ Մուշեղը թողնում է հայրենի Բաղեշը, ոտքով հասնում է Դատվան, ապա Ախլաթ և Ալաշկերտ: Որոշ ժամանակ Ուչքիլիսեի վանքում մնալուց հետո հասնում է Էջմիածին և կաթողիկոս Մ. Խրիմյանի կարգադրությամբ ընդունվում է Գևորգյան ճեմարանը: Մուշեղը լավ էր սովորում, իսկ վեհափառը հաճախ իրեն հետ նրան որսի էր տանում: Մ. Խրիմյանը նրա մեջ տեսնում էր ապագա հայդուկին, և նրա խնդրանքով մի սպա սկսեց Մուշեղին ռազմական գործ սովորեցնել և վարժեցնել զենքի գործածության մեջ:

Ճեմարանում ուսանելուց հետո նա գնում է Երևան, ապա՝ Կարս և Բիթլիս, որտեղ էլ ամուսնանում է, ունենում երկու երեխա: 1894 թ. Սասունի ինքնապաշտպանական կռիվներից առաջ նա ծանոթանում է Մ. Տամատյանի հետ, որից հետո թողնում է ընտանիքը և մըխըրճվում հայ ազատագրական շարժման հորձանուտի մեջ: Տամատյանի հետ նա շրջագայում է Մուշի և Սասունի գյուղերը: Մ. Տամատյանի բանտարկությունից հետո նա վերադառնում է հայրենի քաղաքը և ծանոթանում այնտեղ գտնվող Սերոբ Վարդանյանի (Աղբյուր Սերոբ) հետ, որի հետ մեկնում են Ախլաթ, Բուլանըխ, Մուշ և Սասուն:

Հայդուկային շարժման այդ նրկու աչքի ընկած ներկայացուցիչները սերտ կապերի մեջ էին Մարգար (Ամիրյան) վարժապետի հետ: Շատ չանցած Մարգար վարժապետին թուրքական իշխանությունները բանտարկեցին և դատի տվեցին: Նա կախվեց Բաղեշում, իսկ նրա հետ դատապարտվածները՝ մի քանի տասնյակ մարդ, ուղարկվեցին թիապարտության: Իմանալով, որ բանտարկվածները բանտ են ընկել մի մատնիչի պատճառով, Մուշեղը սպանում է նրան և անհետանում: Թուրքական ոստիկանությունը խուզարկում է նրա տունը, սկսում է խոշտանգել նրա կնոջը, սակայն Շողերը անվախ հայտարարում է՝ բանտարկվածները անմեղ են, իսկ եթե դուք ցանկանում եք բռնել Մուշեղին, ապա նա մատնիչին ըսպանեց և փախավ, գնացեք և եթե կարող եք, բռնեցեք:



Բիթլիս քաղաքը

Այս դեպքից հետո Տոսա գյուղում լսպանում է քուրդ ցեղապետ Սլոյին, որը սառսափելի վիճակ էր ստեղծել գյուղի ռաղատ բնակիչների համար, ապա Սերոբի հետ 1898 թ. ահաբեկում է Բիթլիսում հայերին հարստահարողներից մեկին:

Մուշեղը միշտ իր հայրենակիցներին համոզում էր զենք ունենալ և անհրաժեշտության դեպքում պաշտպանել իրենց ընտանիքը: Նա մարդիկ է ուղարկում Կովկաս, այնտեղից զենք է տեղափոխում և բաժանում գյուղացիներին:

Մի օր նրա խումբը Նազիկ (Փրխուս) արցունքաձման և քաղցրահամ լճի մոտ գտնվող հայ բնակչություն ունեցող գյուղը ծայրերի մեջ էր: Քրդական ուժերը, իմանալով այդ մասին, շրջապատում են խումբը: Սկսվում է կռիվը: Հայդուկների անվրեպ գնդակներից տասնյակ մարդիկ են ընկնում: Խմբին հաջողվում է զինաթափ անել մնացածներին: Մուշեղը նրանց ազատ է արձակում և պատվի խոսք վերցնում, որպեսզի այլևս չնեղեն հայ գյուղերի բնակիչներին:

1897 թ. Մուշեղը 6 ամիս Կովկասում էր: Նույն թվականին երկու խմբեր անցնելով սահմանը, շարժվում են դեպի երկիր: Առաջին խումբը խլաթցի Նադոյի հետ իջևանում է մի գյուղում, որտեղ շրջապատվում է քրդական ուժերի կողմից և շատ կորուստներ կրում: Մուշեղի խումբը հասնում է այդ գյուղը, պատժում է առաջին խմբի վրա հարձակվողներին, ապա շարունակում է ճանապարհը: Ղլիճ կետում սարի վրա խումբը շրջապատվում է պետական զորքերի և քրդական ու-



Բիթլիս գետի հովիտը

ժերի կողմից: Սկսվում է կռիվը, որի ընթացքում թշնամին կորուստներ է ունենում: Մուշեղի խմբին հաջողվում է կըռվով հասնել Կաթավին լեռը: Այստեղ հայդուկները շրջապատվում են մեծ քանակի ուժերով: Թշնամուն ահագին վնաս հասցնելով և 12 զոհ տալով, Մուշեղին հաջողվում է 20 ընկերներով գնալ Զավուշ-Բաթնոց գյուղի մոտ գտնվող լեռները: Այստեղ նույնպես կռվի բռնվելով թուրքական ուժերի հետ և 2 զոհ տալով, շարժվում են առաջ: Խումբը ցըրվում է, իսկ Մուշեղը 3 ընկերներով ամրանում է մի ավերակ ջրաղացում: Թըշնամին ամեն գնով ցանկանում է գրավել ջրաղացը, սակայն նրան չի հաջողվում անել այդ: Մուշեղին և իր ընկերներին հաջողվում է դուրս պրծնել ջրաղացի ծուղակից: Քրդական ուժերը լցվում են հայ գյուղերը՝ հայդուկների վրեժը խաղաղ բնակիչներից լուծելու համար, սակայն նրանց ցեղապետներից մեկը, որը սքանչացել էր Մուշեղի և նրա ընկերների քաջությամբ, թույլ չի տալիս այդ:

Մուշեղի խումբը կռվով հասնում է Ախլաթի Փրխուս գյուղը, որտեղ կռվի թեժ պահին նրանց է միանում Աղբյուր Սերոբը իր 15 հայդուկներով: Խմբերը կռվելով բարձրանում են Նեմրութ լեռան գագաթը, որտեղ մի քանի օր հանգստանալուց հետո իջնում են Բիթլիս: Թուրքական իշխանությունները շատ լավ գիտեին հայդուկների Բիթլիսում գտնվելու մասին, սակայն չեն կարողանում նրանց բռնել: Գազազած՝ նրանք բանտարկում են Մուշեղի կնոջը, սակայն՝ անօգուտ:

Մուշեղը մի օր իմանում է, որ Մոտկանի հայերի անասունները քրդերը տարել են: Իր խմբով գնում է Մոտկան և ստիպում է վերադարձնել անասունները, որից հետո մեծ քանակությամբ անասուններ է բերում Բիթլիս և բաժանում չքավորներին: Թուրքական իշխանությունները սկսում են ավելի ուժեղացնել Մուշեղի և Աղբյուր Սերոբի խմբերի հետապնդումները: Մի օր Բիթլիսի նահանգապետը իմանում է, որ Մուշեղի խումբը իջևանել է Բիթլիսից ոչ շատ հեռու գտնվող Փափշեն գյուղում: Նրա կարգադրությամբ բանակի մի վաշտ պաշարում է այդ գյուղը: Սկսվում է կռիվը: Թշնամին ունենում է զգալի կորուստներ, իսկ հայդուկներին հաջողվում է մութն ընկնելուն պես ճեղքել թշնամու պաշարման շղթան և բարձրանալ լեռները: Նահանգապետը իմանալով այս մասին, կարգադրում է քարուքանդ անել գյուղը: Թուրքական բարբարոսները այդպես էլ անում են: Մի քանի ժամվա ընթացքում գյուղը ավերակի է վերածվում և թալանվում է թուրքական պետական զորքերի կողմից:.

Մուշեղը սպանվեց 1899 թ. Խախուեֆ գյուղում: Նրա մասին ժողովուրդը հորինեց մի շարք երգեր՝ մարտական ու տըխուր: Այդ երգերի մեջ նկարագրված են նրա խմբի կռիվները՝ սկսած Կաթավինա սարի կռվից, ուր քրդական զինված ուժերին հայդուկները ցույց տվին անվրեպ գնդակ արձակելու և քաջաբար մարտընչելու իրենց շնորհքը: Ապա ասվում է այն մասին, որ հերոսական կռվի ժամանակ նրանց վրա հարձակվել էր ամբոխը: «Ավերակ Ջաղաց» երգում ասված է այն մասին, թե ինչպես սպանվեց Մուշեղը Խախուեֆ գյուղում: Ահա մի կտոր այդ երգից, որն ունի իր մի քանի տարբերակները.

«Մուշեղ և ընկերք Խախուեֆ գեղ մտան
Միամիտ սրտով, եղբայր ջան, տան
մեջ ալ մտան...
Մուշեղի մարմին, եղբայր ջան, գետին
փռեցին:
Մուշեղ պոռաց. ազնիվ ընկերներ,
Մուշեղի վրեժ, եղբայր ջան, շուտով
հանեցեք»:

Ուսումնասիրությունից երևում է, որ Մուշեղի մասին երգեր են հորինվել նաև քրդերի կողմից, և ինչպես քրդերը, այնպես էլ թուրքերը երգել են «Խաթավին» և «Բաքշենի կռիվը» երգերը, որոնց մեջ փառաբանվում էր Մուշեղի և նրա խմբի քաջագործությունները:

Ավ. Իսահակյանը հայդուկների այդ ժամանակաշրջանի կռիվների մասին դեռ երիտասարդական տարիներին գրած իր մի բանաստեղծության մեջ ասել է.

«Սալնո ձորերում, կռվի ձորերում
Հայդուկն է ընկել խոր վերքը սրտին.—
Վերքը վարդի պես բացված կարմրուն,
Ու ձեռքն է քցեր կոտրած հրացանին:

Արնոտ դաշտերում ծղրիդն է ծղրում,
Հայդուկն է ընկել մահվան խոր քնով,
Հայդուկը հոգում երազ է տեսնում.—
Հայրենի աշխարհն ազա՛տ, ապահով»:

Իշկեց, տեսավ, որ Արազ ձեն քցե ուր փոր
Ու ուրին-ուրին բան ա կխոսա.
«Ա՜խ, լպզան զե՛ղ,— ըսեց Անդրանիգ,—
Ըսա՝ մզա ի՞նչ կըսիս, կէրտամ կռիվ,
Ե՞ս բդի հախտիմ, թե՞ Խալիլ»:
Էդ վախտ Մասիս սարու դոշ պատռվավ,
Քարեր գածին էգան, ու դուռ մի բացվավ,
Էդ լուս-դռնից ձիավոր մի դուս հ՛էլավ,
Բեղ ու մուրկով, զենք ու զըրխով,
Փոտորկիմ պես էգավ, կայնավ վիրև,
Ձեն տվեց, ըսեց.— Անդրանի՛գ, լա՛օ, հ՛անգըրջդրա,
Ինձի լավ կճանճնաս, Վարտան Զորավարն իմ,
Իմ կռիվ հ՛էվելի դժար էր, քան քում,
Մենք էն վախտ մինաg էնք, անփորձ էնք,
Մզի թև-թիգունք չկեր,
Մեզ դեն պարսից, մեզ էլ դեն՝ ընդրանց ֆլեր,
Մզա՛, փառք աստծու,
Ռուսի պես մենծ ախպեր ունիք,
Դուք ըսօր քիչ մի խառվաք հ՛իրար,
Հըմա էդի ժամանագավոր բան ա,
Դու մարտու մը՛ լսա, հ՛առեճ հ՛ընգի ու զարգ,
Հախտանաց քումն ա,
Ընդրանք լե գիկան ու կմիանան:
Մինաց բան մի քզի գուզիմ հառծում,
Մըր վախտ
Էրգրի հ՛էրես ոչ թուրկ կար, ոչ զոյում,
Ընդրանք հ՛ուստի՞ծ ծլան,
Հ՛ուստի՞ծ էգան ու էրգրի տեր դառծան,
Հ՛օրի՞ թորգեցիք, որ մդան ձըր տներ,
Քանդին ձըր գեղեր ու քախկներ,
Ավիրեցին ձըր վանքեր ու ժամեր,
Մզա քին մի ուշացեր իք, հըմնա իդհմալ չմնա,
Արտարուտեն կհիվնդնա, բայց չմեռնի,
Քանի աշխրկի հ՛էրես հայ մի կա,
Էնի չմոռնա թուրքի բերած զոյում,
Գնա՛, թը՛խ քզի հայու աստված էղնի պայապան,
Թը՛խ Հայաստանի արև էղնի օգնական,
Անդրանիգ ձիուծ հ՛իճավ,
Գլոխ հ՛իճուծ Վարտան Զորավարի հ՛առեճ,
Չոկավ, պագեց ընդրա սուրբ ձեռ,
Թռավ կայնավ, ըսեց.— Քու օրհնուտեն առա,
Է՛լ ընձի պարտուտեն չկա,
Մնաս բարով, սուրբ Զորավար,
— Էրտաս բարով, ի՛մարտ և հաղթանա՛գ,—
Ըսեց Վարտան Զորավար ու գնաց-հեռեցավ,
Գնաց, մդավ Մասիս սարու մեճ:
— Իմ քաջ ֆիդայի՛ք, դեմի՜ Դիլման,
Թըխ Խալիլ փաշեն լավ հ՛իմնա,
Որ մզի պարդուտեն չկա,
Ի մա՜րտ, հ՛առե՜ճ...



Դուք սովրացան մառտասպան չիք, գազա՛ն իք, գազա՛ն,
Զըգի կախարան գհասնի, բայց, ափսո՜ս, կգյուլլին,
Ավազագներու, մարտասպաններու վերն էդ ա էղե...
Էդ վախտ տաս-տասնուհինգ թուրկի կնիգ
Զաղրեք ուրանց գլոխ քաշուց էգան ու կայնան.
Մեգ չաղրեն գլխուծ հանեց ու լալուջգալ.
— Ես խորող ախճից իմ ու քըգի կպատկանիմ,
Ես քո՛ւմն իմ, Անդրանի՛գ փաշա...
—Բաջի՛, դու լսեր իս հայ ֆիդայիներու անուն,
Քգի քու մառտ պաղման կէղնի՝
Օր մենք կնգա ձեռ չիդանք,
Նա՛ լե ըխտիարներուն, էրեխեքուն,
Մըր կռիվ ընդրանց հեդ ա,
Որնոր կեռ խամեն ուր ձեռ առե,
Հ՛ընգեր ա մեր մեջ ու մզի կկոդորա,
Դուկ ազադ իք, կռնա՛ք էրտա, հո՛ւր գուզիք,
Մինաց ամո՛թ ա, ամո՛թ ա ու այի՛բ,
Օր դուկ լե թալան կէնիկ,
Առանց խղջի ու խղջմդանքի
Հայերու զուգս ու զարտարանք կթալիք ձըր վիզ,
Օր մի՝ ձըր վիզ կրագ գընգնի՜, գվառի՜...
— Յամա՜ն, քու հոդներուն մեռնիմ, Անդրանի՛գ փաշա,
Դու խո մա՛րտ չիս, աստվա՛ծ իս,
Քու բերնով ալլահն ա կխոսա, մենձ մարկարեն,
Օղորտ ա կսխս՝
Ախը՛ր մենք մըր իրիգներուն միշտ կըսենք,
Թե դուկ էդ ի՞նչ ա կէնիկ,
Հ՛ըմնօր բռդոլ-բռդոլ ման գիկաք,
Հայ տղամարտիգ վար կէնին ու ցանք,
Տուն կսարկին ու դպրոց,
Փեդից ու էրգտից մառտ կսարքին,
Դուկ բան մի չգինաք,
Հըմա հ՛աճկ տնգեր իք ընդրանց էրուտկին,
Դո՛ւկ ամառ կերտաք կպառգիկ հովեր,
Ձմեռ գիկաք ու ընդրանց տներու վրեն կնստ...
Դո՛ւկ, ձըր պաքեր ձըր ապուպաքեր
Ընդրանց հաշվին ինք աբրե, իդռնիծ լե լավ
Ընդրա՛նք կաշխադին, մե՛նք կուդինք,
Կդրում ու կոդորած հ՛օրի՛ կսարկիք,
Կըսին՝
Էդի Ստանբոլյա էգուց կարգադրուտեն ա,
Բդի՛ էնինք, բդի՛ ջնջնիք հայ ասկ աշխրկիծ,
Մենք շա՛դ ինք ըսե, շա՛դ ինք նեղվե,
Մզի լսող չէղե...
— Խելոկ կխոսաս, ա՛յ բաջի, լա՛վ կըսխս,
Օր դուք լե հեսիր իք ձըր մարտերու ձեռ,
Ընդրանք ի՞նչ իրիգ ին, արնոդ բերան գէ՛լ ին,
Հ՛իմցի՛, օր աշարկ աշխրկով կէղնի,
Հըմա ուրիշի արգին հ՛աճկ տնգող ձըր մարտեր



Անդրանիկ քանիմ զինվոր ճամպխեր էր
Դիլման,
Ճամպխե էր, որ մանրամաս հիմնան,
Թե ի՞նչ ա կէնին Խալիլ ու ընդրա ասկրներ:
Գածին, տեսան, էգան ըսին,
Թե՝ Էնտեխ մենք տեսանք,
Որ թուրկ ասկրներ հանդա կրակ ա էրած,
Հայ ախճըկներ տըլոկսուցած, զոռով գովնդ
կխաղան,
Դհոլ–զուռնեն դը՞նգ, հա՛, դը՞նգ գզարկին,
Խուժան պառկե կեղին կհռհռա՛, կբոռբռա՛,
Մըր ախճըկներ ամոտու կծղրդան, կսրսպան,
Հըմա վի՞ր հոգն ա, Խալիլն ա էղպես ուզե,
Էդ կրակի միճուծ էրեխի ձեն կիկեր,
Կրակ, հողն ու փոշին ձեն կիդեն, գիլեն,
Ախճըկներ քու խաղ կսեն՝
«Սարերո՛ւ առծիվ, Անդրա՞ն, լա՞ո,
Ո՞ւր իս, արի՛, Անդրա՛ն, լա՞ո...»:
— Լա՛վ, լա՛վ, հասկցա՞նք, էդի նորութեն չէ,
Թուրկեր միշտ լէ
Ուրանց ուժ կչափին կնգտոց հեղ,
Ըսօր ես ու Խալիլ հ՛իրար ճակատ կչա՛փինք:
Ըսեց ու հ՛իճավ ձիուց,
Գնա՞ց, կայնա՛վ քարպի մի գլոխ,
Ձեռ տարավ ծոց, հանեց մենձ մատիդ մի,
Թխտի վրեն կռիվ էրեց, պռծավ,
Դառծավ ուր մոդ կայնուկ Վհանին տվեց, ըսեց.
— Իդա լէ պայա՛, հեդև կիդաս հայ պատմաբանին,
Թը՛խ հ՛իմնա, որ ես լէ կանոնավոր կռվել գիամ...
Թռավ, հեծավ ուր ձին,
Վերջին անգամ խանճեց ուր աստված
Ու հրաման տվեց.— Դեմի Դիլմա՞ն, լեռնակռիվ,
Խալիլ փաշեն ուր վրեն ու ասկըրներու՝ խառա էր,
Գիներ, որ ռուս–խազախներ թորգածին, կերտան,
Ուրխտուներն ընդրանց հողներ գեղնեն կդրեր էր,
Ուր գրագրեքուն թամբի կեներ, կըսեր.
— Ջուլֆա կարմունջ՝ բա՛ց, Նախճվան մըր ձեռն ա,
Մենք բդի դառնանք, էրտանք, հասնինք Թավրի՛զ,
Հայերուց խլինք Ծարո՛ւր, մղնինք Զանգեզո՛ւր,
Բդի խախտինք ռըսներու դիրքեր,
Բդի իգան ինգլիզու, գերմանու զորկեր,
Բդի Կովկաս առնինք մըր լպերու մեճ,
Ինչքան գուզիք՝ քեֆ էրեք,
Հըմա՝ մը մոռծեք,
Որ Անդրանիկ ու ուր ֆիդայիք քնո՛ւկ չին,
Ընդրանք վայտե հ՛ըմեն բան խարար էնին՝
Ամոտով մնանք մըր ուխտի էրգըներու հ՛առեճ...

Օղորտ ա՝ լուս բացվավ, չբացվավ,

Առաջին գծի դրուտեն լրիվ փոխվավ,
Անդրանիգ ուր զինվորներով
Թուրկերու ճանապեն փագին,
Զա՛րգին, մնան ընդրանց դիրքեր,
Շադե՛ր թվնքներ թալին փախան, շադե՛ր սպանվան,
Խուժան պոգվավ տեղեն, բռռաց, փախավ...
Թուր էր՝ օր կշխկռտեր, թվանք էր՝ օր կռռնար,
Կրագ էր՝ օր կթափեր մարտկանց գլխուն,
Խուժան էյման կծիգ դառեր էր, վայնասուն կճաներ,
— Թասլի՞մ,— ճմնուծ բանձր կըսեր Անդրանիգ,
Էդ խոսկի վրեն քանիմ ասկյար ձեռներ տնգին,
Բեգ մի էրգու ձեռ բանցրծուց, թվա՛նք թալեց,
Գլուխ ճ՛ինուծ Անդրանիգի առեն, կայնավ.
— Զանգի՛ր աղեն իմ, սխալմունք ա էղե իմ կողմանե,
Ես ուխտեր ենք, օր քու ճեղ բդի ախպրենենք,
Մզա վախտ էգեր, ա,
Ես իմ քրտերով քու ճրամանի տագն ինք,
Ըսա՛, իմա՞լ, մաքրինք մըր վրիծ ճանցանք...
— Զանգի՛ր աղա, դու ազնիվ մարտ իս,
Հ՛ըմենքս լե էդի գինանք, ճ՛մնուս լե պարզ ա,
Արուն արնով չմաքրվի, դու լե ինե լավ գինաս,
Զա՛րգ, զա՛րգ էդ անօրեստանններուն,
Ըսօր ձգի խապած՝ լարած ա մըր դեմ,
Մըզլոր թուրկեր կսկսին քրտական չարդ,
Թըխ աստված ձըր ուխտ կադարե,
— Փա՛շա, մըր աճկի լուս, մըր ճ՛էրեսի մարտ,
Մենք ճ՛ըմա մզա լե քզի ցուց կիդանք,
Թե ինչքա՞ն ինք նվիրված ճայներու ազադուտենին,
Է՞յ, իմ քաճե՛ր, զենքե՛ր վերուծեք,
Զարգե՛ք, թը՛խ թուրքեր ճ՛իմնան մըր ուժ լե:
Էդ վախտ ճայ կնգտիկ ու ախճգտիգ,
Վիրու օճխներու պես բը՛ռ էդան,
Էգան ճասան էնտեխ խորունգ փոսի մոդ,
Ուրանց շորեր գդան, ճագան,
Թապով էգան դեմի կովու տուն տեղ,
Սպանվուգներու խամեք, թվնքներ ճավաքեցին,
Ջոգվան-գածին դեմի թուրք ասկրներ,
Գա՛ցին, զա՛րգին, պառգծուցին քանիմ ասկար...
Անդրանիգ տեսավ, ախճգներուն չկնա զսպա
Բռռաց, ըսեց.— Հեսիրներուն ձե՛ռ չիդաք,
Ընդրանց բդի Հայոց դատաստան պատժա,
Լսեցի՞ք, նորեն կըսիմ, ճեսիրներուն սպանելու
Մեզնից ոչ մեգ իրավունք չունի...
Էդ վախտ ճայ կնգտիկ մոդեցան Անդրանիգին,
Էգան, ուրանց գլուխ ճ՛ինուցին,
Խոնարճ բարև բռնեցին, կայնան,
Ընդրանց մինիծ ախճիգ մի դուրս թռավ,
Վազմանց մոդգցավ ցանցան բեղերով թուրկի մի,



Բիրդանց լիզու առավ ու ըսեց.
— Մըր ճ՛աճկի լուս Ա՛նդրանիգ,
Թո՛ր մենք քանիմ աղի դատաստան տեսնինք,
Ամեքսի մե անթխուց ցավ ունինք մըր սիրդ,
Յա՛ն դու զարգ, սպանա,
Յա՛ն թորգ մենք ազնեքով
Ընդրանց ձեռտինք.
— Իմ մերե՛ր, քուրե՛ր, ես ձըր ցավ գճասկնամ,
Հըմա մենք, առանց դատաստանի,
Չընք կոնա մեզի գլխու մավ լե պոգինք,
Մենք խո՛ թուրքի փաշա,
Յա՛ն ընդրանց խուսկին ճավաղացող խուժան չինք,
Օր մըր ձեռ մեգ մի ճ՛ընգավ՝
Բռնինք, սպանինք
Հեսիրներուն ձեռ չիդա՞ք, թե չէ՝
Ես կդառնամ մոդգցողին կսպանիմ...
Էդ խոսկի վրեն թուրք աղե մի ու քուրդ բեգ մի
Էգան ու խոնարճ կայնան Անդրանիգ ճ՛առեն,
Ընդրանցից մեգ լալուզգավ ու ըսեց.
— Փաշա՛, մենք լսեր ենք՝ օր դու քաճ մարտ իս,
Հըմա քզի չընք տեսեր ենք,
Գինանք, օր աղի մի, յա՛ն բեգի մի
Կնգտոց խոսկով չըս սպանի,
Իրանց մը՛ ճավադա, իդրանք կնի՛գ ին,
Հ՛էրեգ մըզի կգովեն, մզի քաճի տեղ կընտունեն,
Հ՛ըսոր ճ՛մալ էղավ, օր քզի՛ կգովեն,
Կնգտոց մը՛ ճավադա, ընդրանց դին ու իման չկա,
Արի՝ մզի ազա՛ն էրա, թո՛ղ, էրտանք մըր տներ,
Ախպե՛ր, մենք լե զզվեր ինք իդա կռվուց,
Հերի՛ք ա, էլ չը՛նք կոնա դիմանա...
— Ի՞նչ ըսեցիր, զզվեր իք, էլ չըք ուզի կռվել,
Ախ՛ր, դու կռիվ չը՛ք էրե, դո՛ւք խապեր իք,
Ձըր դեմ կայնող զո՛րք չէղե,
Անտեր-անտիրազան՝ քանիմ պառավ ու ըխտիար,
Մղե՞ր իք, քանդե՞ր իք, վառե՛,
Հասեր իք էնտեխ, ճ՛ուր ձըր գլուխեն ա ճասե,
Տեսիր իք՝ տարե կնիգ ախճիգ, ամեղ էրեխեք,
Դուք չէ թե կովելուց իք ճեջզե,
Չէ թե զարգվելուծ իք ճիջռե,
Ի՞նչա՛ իմ բարի խոսկերուց ճուոս առաք,
Ու ձըր մեծ ճ՛իրար էգավ ձըր իսկազան արուն,
Անմեղ արնից, ճայո՛ւ արնից կվախենաք
Գիտցաք՝ ձըզի ազադեցի, ու ձըր զուն քշեցիք,
Մզա լէ կըսիք, թե մըր ախճըզներ անառագ ին,
Թե՝ ես ընդրանց՝ չճավադա՞մ, չըլսի՛մ,
Դուք անմեղ զո՛յ իք, ձըզի շքանշա՞ն բլի տանք,
Զինվորազան դաղ ու դաղաստան քիչ ճեղև
Ձըր իսկազան զնաճադազան կիդա,



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

**ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆԵՐՈՐԴ**

# Արշակավան, Ներսես Մեծ

Արշակ թագավորը հայոց կենտրոնական իշխանությունն ամրապնդելու համար նոր քայլեր էր անում առավել զորեղ նախարարներին սանձելու ուղղությամբ: Նրա այդ կարգի գործերից մեկն էլ իր անունով քաղաքի՝ Արշակավանի հիմնադրումն էր: Այդ քաղաքը Արշակը կառուցել է տալիս Կոգովիտ գավառում, Արշակունիների գանձերն ամփոփող Դարույնք ամրոցի մոտ (Կոգովիտը գտնվում է Այրարատ աշխարհում, Արարատ լեռան հարավային թիկունքում): Դա մի վայր էր, որտեղով անցնում էր առևտրական մեծ ճանապարհը, նաև ուրիշ առևտրական ճանապարհներ խաչավորվում էին այնտեղ:

Արշակ թագավորը հրաման է արձակում Արշակավանի բնակիչներին մեծ արտոնություններ տալու մասին. ով պարտքեր ուներ, ազատվում էր վճարելուց, ով հանցանք էր գործել և հետապնդվում էր, ազատվում էր դատ ու դատաստանից: Եվ Արշակավանում են հավաքվում նախարարների ճնշումից տառապած գյուղացիներ, զանազան պարտապաններ, փախստական ծառաներ, ամուսիներից փախած կանայք, նաև գողեր, ավազակներ, հանցագործներ, խաբեբաներ, մարդասպաններ: Շատերն էլ իրենց տերերի գանձն էին հափշտակում և գալիս այդտեղ: Արշակավանը արագ մեծանում էր: Նրա բնակիչները ազատ քաղաքացիներ էին՝ ազատված հարկերից, հետապնդումներից:

Արշակավանը դառնում էր թագավորի հենարանը ընդդեմ այն նախարարների, որոնք ջանում էին առավել ինքնուրույն դառնալ, հակադրվել կենտրոնական իշխանությանը: Արշակավանում կառուցվեց հայոց թագավորի շքեղ ապարանքը: Արշակավանն, իրոք, դարձավ Արշակ թագավորի քաղաքը:

Պարզ է, որ այս ամենից պետք է դժգոհեին խոշոր նախարարները: Նրանց հարկատու շինականները (գյուղացիները) փախչում էին Արշակավան՝ թագավորի հենարանը, որը նրան ուժ էր տալիս սահմանափակելու նախարարների իրավունքները:

Նախարարները Կամսարականների գլխավորությամբ հարմար պահի էին սպասում Արշակավանը վերացնելու: Հայոց եկեղեցին Ներսես կաթողիկոսի գլխավորությամբ նույնպես դեմ էր Արշակավանին, բայց ավելի շատ՝ բարոյական տեսակետից: Ներսեսը չէր կարող հանդուրժել այն իրողությունը, որ Արշակավանը Հայաստանում հանցագործությունների ավելացման պատճառ էր դառնում. գողը, ավազակը, մարդասպանը վախ չուներ, նա գիտեր, որ հանցանք գործելուց հետո ապահով տեղ կգտնի Արշակավանում:

Փավստոսը գրում է. «Բոլորի բերանում ընդհանուր խոսք էր դարձել, և միշտ ասում էին, թե՝ իրավունքը մեռավ, եթե այն գոյություն ունենար, բայց կորած լինեը, կփնտրեինք, մի տեղ կգտնեինք»:

Այդ ժամանակ ժողովրդի մեջ մեծ հեղինակություն ուներ Ներսես կաթողիկոսի աշակերտ ու տեղապահ Խադ եպիսկոպոսը: Նա օգնում էր աղքատներին, խնամում հիվանդներին, նեցուկ կանգնում զրկվածներին և հանդիմանում էր Արշակ թագավորին նրա շվայտ կյանքի, ինչպես նաև Արշակավանը հիմնելու համար: Երբ թագավորը հրավիրում է Խադին օծելու Արշակավանի նորակառույց եկեղեցին, եպիսկոպոսը հրաժարվում է:

Խորենացին գրում է. «Իսկ հայոց նախարարները ժողովվելով դիմեցին թագավորական դաստակերտի՝ Արշակավանի վրա, սրով կոտորեցին տղամարդկանց և կանանց (բացի ծծկեր երեխաներից), որովհետև նրանք՝ յուրաքանչյուրը կատաղած էին իրենց ծառաների և վնասարարների դեմ»:

Այսպես, Արշակ թագավորը չհաջողեց իր այս գործի մեջ, նախարարների միությունն ավելի ուժեղ գտնվեց:

Ներսես կաթողիկոսը բյուզանդական գերությունից վերադառնալով՝ անմիջապես մեծ գործունեություն է ծավալում Հայաստանի բոլոր շրջաններում: Նա շարունակում էր պայքարը հայ ժողովրդի մեջ հեթանոսությունից մնացած կիսավայրենի սովորությունների դեմ, ինչպես, օրինակ, բազմակնության, մերձավորի հետ ամուսնանալու, աղքատների և անտերունչ հաշմանդամների նկատմամբ դաժանություն անելու և այլն:

354 թվականին Տարոն աշխարհի հզոր կենտրոն Աշտիշատում, որտեղ հայոց առաջին քրիստոնեական տաճարն էր հիմնվել, Ներսես Մեծը հայ եկեղեցականների և նախարարների ժողով գումարեց: Այդ ժողովում մշակվեցին եկեղեցական և աշխարհիկ օրենքներ, որոնց մեծ մասը հայ ժողովրդի մեջ հեթանոսական սովորույթների հաղթահարմանն էր նվիրված: Այդ օրենքների մեջ կարևոր տեղ էր տրված հայերի ընտանեկան կյանքին. խստորեն արգելվում էր մերձավոր ազգականների ամուսնությունը, անառակությունը, հարբեցողությունը, որկրամոլությունը: Օրենքներն արգելում էին մահացածների վրա «անչափ ու անարգ սուգ անելը», քանի որ «պետք է նկատի ունենալ հարության հույսը, չըկարծել, թե մարդու մահն անդառնալի է»,— պատմում է Փավստոսը:

Օրենքների մեջ պատվիրված էր, ինչպես Փավստոսն է գրում, «հենց իրեն՝ թագավորին, մեծամեծներին և առհասարակ նրանց, որոնք ուրիշի վրա իշխանություն ունեին, որ գութ ունենան իրենց ծառաների, ստորադրյալների և աշակերտների վրա, սիրեն նրանց իբրև իրենց հարազատների, ավօրինի կերպով ու չափազանց հարկերով նրանց չնեղեն, հիշեցնելով, որ նրանց համար էլ Աստված կա երկնքում»: Ծառաներին էլ,— պատմում է Փավստոսը,— պատվիրված էր «հավատարիմ և հնազանդ լինել իրենց տերերին, հիշեցնելով նրանց, որ դրա համար վարձք կստանան Տիրոջից»:

Այս կանոնները հիմնված էին Նոր կտակարանի գաղափարների, հատկապես Պողոս առաքյալի հոգևոր նամակներում եղած պատվիրանների վրա (Պողոս առաքյալը քրիստոնեության առաջին տարածողն էր հեթանոսների մեջ):

Կանոնների մեջ առհասարակ կարևոր տեղ էին գրավում գութը, ներման ոգի ունենալու կարևորության, վրեժխնդրության արատավորության դրույթները: Ըստ այդ կանոնների, Հայաստանի բոլոր վայրերում հիմնվեցին հիվանդանոցներ, ծերանոցներ, հաշմանդամների տներ, բորոտանոցներ: Ըստ Ներսես Մեծի, օտարականը Հայաստանում ապաստան պետք է ունենար, հիվանդները և հաշմանդամները խնամվեին: Ուշադրավ էր բորոտների խնամքի հարցը: Բորը ահավոր հիվանդություն է. մարդու ամբողջ մարմինը վերքոտում է: Այն սուր վարակիչ է: Ըստ Հին կտակարանի՝ բորոտներին հեռացնում էին հասարակությանն միջից: Հեթանոս հայերը նույնն էին անում: Բորոտներին (ուրուկներին) քշում էին անապատ վայրեր, սովի մատնում: Իսկ Ներսեսի հաստատած կանոններով Հայաստանում հիմնվեցին հատուկ բորոտանոցներ, որոնցում բորոտների նկատմամբ խնամք էր տարվում. ճիշտ է, կանոններում կա կար, որ խնամողները շատ զգույշ պետք է լինեն, որ չվարակվեն:

Հայաստան աշխարհը առաջին երկիրը եղավ իր մարդասիրական հրաշալի օրենքներով: Այդպիսի գթասրտություն և բարեգործական հիմնարկներ 4-րդ դարում աշխարհի ուրիշ որևէ երկրում չըկար:

Ինքը՝ Ներսես Մեծը, իր անձնական կյանքով էլ սիրո և գթասրտության օրինակ էր տալիս: Փավստոսը գրում է. «Այրիներին, որբերին, չքավորներին հանգիստ ու սնունդ էր ապահովում, աղքատները միշտ նրանով ուրախանում էին, իր սեղանատունն ու սեղանը միշտ բաց էին աղքատների, օտարականների և հյուրերի համար: Եվ այնքան մեծ էր նրա աղքատասիրությունը, որ, թեպետ բոլոր գավառներում աղքատանոցներ շինեց և նրանց համար դարման նշանակեց... բայց և այնպես առանց նրանց սեղան չէր նստում, այլ կաղերը, կույրերը, հաշմանդամները, վերքոտները, խուլերը,

տնանկները, կարոտյալները նրա հետ սեղան էին նստում ու կերակրվում: Եվ ինքն իր ձեռքերով բոլորին լվանում էր, օծում, վերքերը կապում, իր ձեռքով նրանց կերակուր էր բաժանում, իր ամբողջ ունեցածը նրանց վրա էր ծախսում, բոլոր օտարականները նրա հովանու տակ էին:

Եվ ինչ որ ինքն էր անում, նույնը սովորեցնում էր անել և ուրիշներին. ինքը մաքուր, զգաստ և արթուն մարդ էր ու բոլոր մարդկանց պատրաստում էր Աստծու խոսքը ընդունելու: Մարգարեների և առաքյալների նմանությամբ սովորեցնում էր ողորմած լինել: «Ձեր մեղքերը,— ասում էր նա,— պետք է ողորմածությամբ քավեք և ձեր անօրեն գործերը՝ գթությամբ և աղքատներին ողորմություն տալով»:

Փավստոսը գրում է նաև, որ Ներսեսը գերության մեջ ու բանտերում տառապող շատ մարդկանց է ազատել, ոմանց համար փրկագին տալով, ուրիշներին՝ բանտապանների սրտում գութ առաջացնելով:

Հայ ժողովրդի պատմության մեջ Ներսես կաթողիկոսը բացառիկ է եղել իր սիրով ու գթասրտությամբ, ընկածներին, չարչարվածներին, լքվածներին օգնության հասնելու իր կորովով: Դրա համար էլ հայ ժողովուրդը նրան Մեծ անվանեց:

Ներսես Մեծը Հայաստանում հիմնեց նաև վանքեր ու հոգևորականների միաբանություններ, դպրոցներ:

Արշակ թագավորն իր գահակալման առաջին տարիներին ջերմ հարաբերության մեջ էր Ներսես Մեծի հետ: Երբ իմացավ Ներսեսին ամայի կղզի աքսորելու մասին, շատ վշտացավ: Իսկ երբ Ներսեսը վերադառնում էր բյուզանդական աքսորից, Արշակ թագավորը նրան ընդառաջ գնաց մայրաքաղաքից հեռու:

Սակայն պետական գործերը հաճախ չեն համընկնում սիրո և բարության պահանջներին: Հայաստանը շրջապատող հակառակորդ պետությունները, որոնցից ամեն մեկն ուզում էր կուլ տալ հայոց երկրի մի կտորը, նաև հայոց նախարարների մի մասը, որ գաղտնի դաշնակցում էր Հայաստանի թշնամիների հետ և անջատողական քաղաքականություն վարում կամ մտքում դնում հայոց գահին տիրանալու նպատակը, բարդ իրավիճակ էին ստեղծել երկրում: Թագավորը, եթե նա աշխատելու էր հաղթահարել արտաքին ու ներքին վտանգները, չէր կարող միայն սիրով և գթասրտությամբ այդ անել: Հայաստանը միասնական և անկախ պահելու համար անհրաժեշտ էր գործադրել և՛ խորամանկություն, և՛ ուժ, և՛ դաժանություն: Այդ միջոցներով էին պահվում այն ժամանակների բոլոր պետությունները, և Հայաստանը բացառություն լինել չէր կարող: Արշակ թագավորը կա՛մ պետք է գութով ու ներողամտությամբ առաջնորդվեր, և այդ դեպքում նա պետք է հրաժարվեր երկրի առաջին ղեկավարի իր պաշտոնից, ինչպես Տրդատ Մեծն արեց կյանքի վերջին շրջանում, կա՛մ պետք է մնար որ թագավորական գահին և վարվեր Արևելքի մյուս, առավել հաջողակ միապետ-բռնակալների նման: Արշակն ընտրեց երկրորդը: Եվ հաջողության հասավ Մեծ Հայքի միասնությունն ու անկախությունը պահպանելու գործում:

Արշակ II-ի իշխանության հետագա շրջանում նրա գործադրած անգթությունն ու դաժանությունները, պարզ է, որ պետք է մերժվեին Ներսես Մեծի կողմից, և այստեղից էլ լուրջ հակասություն առաջացավ հայոց եկեղեցու և պետության միջև: Ներսեսը մեծ էր իր բարությամբ, Արշակն էլ հզոր թագավոր էր պետական ղեկավարի իր հմտությամբ: Նրանք անհաշտ եզրեր էին, մանավանդ որ ոչ մեկը չէր ուզում զիջում կատարել:

Ներսեսի բացակայության ժամանակ Արշակը, որ չհաջողեց Արշակավանի միջոցով նախարարներին հնազանդեցնել, այլ միջոցների դիմեց: Մովսես Խորենացին գրում է. «Նա կոտորեց նախարարներից շատերին, մանավանդ ընդաջինջ արավ Կամսարականների ցեղը»: Արշակը հուսամն և Արշակավանի կործանումը ղեկավարող Կամսարականներին հրավիրում է Արմավիր իր պալատը որպես պատվելու, հյուրասիրելու համար և հրամայում է բոլորին սպանել, տղամարդկանց, կանանց, երեխաներին: Կամսարականներից փրկվում է միայն մեկը՝ Սպանդարատը, որը չէր եկել Արմավիր խնջույքին: Իմանալով իր տոհմի կոտորվելը՝ նա փախչում է հույների կողմերը՝ Բյուզանդիա:

Այսպես Արշակ II-ը վարվում էր նաև հայոց կենտրոնական իշխանության անհնազանդ այլ նախարարական տների հետ:

(շարունակելի)




Մի բույս կա մեր սարերում՝ Արագածի լանջերին, աճում է ժայռի ճեղքերում: Նայում ես՝ թվում է, թե դուրս է եկել ուղղակի քարի միջից: Թերթերն էլ ասես քարի տաշեղներ լինեն՝ կոշտավուն, կլոր ու քիչ սրածայր: Բայց երբ դիպչում ես նրանց՝ նուրբ թավշյա մի զովություն է լցվում մաշկիցդ ներս: Թերթերը լի են կենարար հյութով: Ամենաստոր ու տոչոր եղանակներին այդ բույսը ունի թարմ տեսք, վառ-կանաչ գույն: Որտեղի՞ց է նա հավաքում այդքան ուժ ու պաշար՝ դժվար է ասել, երբ շուրջբոլորը ամեն ինչ չոր է, վառվում է արևի հրից, ոչ ջուր է հոսում մոտով, ոչ անձրև է եկել մի ամբողջ ամիս: Զարմանք բան է:

Մի անգամ այդ բույսից պոկեցի մի ճյուղ, տարա տուն: Մտածում էի՝ կդնեմ ջրով լի բաժակի մեջ, թող ապրի, սեղանիս վրա:

Վանեցի-կարսեցի տատս տեսավ՝ ասաց.

— Բալա ջան, իզուր տեղը ջրի մեջ մի դիր: Մեկ է, էդ բույսը կապրի էնքան, ինչքան որ մեջը կյանք կա: Կուզե՞ս կախի պատից, մեկ է...

Տատիս լսելով՝ կախեցի պատից...

Անցան օրեր, բույսը չէր կորցնում վառ կանաչ տեսքը: Նույնիսկ ցողուն էր տվել, հետո էլ՝ ծաղկեց...

Պատկերացնո՞ւմ եք, շաբաթներով մայր բնից կտրված բույսը չէր չորացել քիչ չէ՝ հետն էլ ծաղկում էր, սերմունք տալիս առէջքներում:

— Հայի պես է, բալա ջան, մի զարմանա,— ասաց տատս:— Գիտես թե մենակ մարդոց մե՞ջ կա հայու տեսակը: Բույսերու մեջ էլ կա հայը: Էդ որ պատից կախ չի չորանա, ծաղիկ կուտա, հայ չէ՝ հըբը ի՞նչ է:— Ասում էր ու գըլոր-գլոր արտասվում իմ վանեցի-կարսեցի տատը..

Մառախուղի փեշը պոկվեց սարերնու թիից, ետ գնաց, և հեռացող մառախուղի հենց փեշի տակից դուրս ելավ ու վախեցած շուրջը նայեց անփորձ մի գայլուկ: Սարերնու թիից տասը-տասներկու քայլ հեռավորության վրա մեկնվածպառկած ջահել նախրապանի դեմքը բացվեց-ողողվեց լայն մի ժպիտով, և նույն պահին էլ ժպիտը սառեց, ու հին, մամռոտ տագնապի հետ գլուխ բարձրացրեց նորածին միտքը՝ մայր գայլն, ուրեմն, մոտերքում է: Բայց մառախուղի թանձր ծվեններից մաքրված, հստակված հեռուներում նախրապանի սուր աչքը չորսաց շարժման գոնե մանր մի թրթիռ, և հունից ելած բորբոք միտքը գնաց գայլի ետևից: Ու երևակայությունը ամբողջացրեց հնարավոր մի պատկեր. մայր գայլն, ուրեմն, ծանր թմբիրի տակ մի պահ ննջել ու աչքաթող է արել գայլուկին, և հնարավոր դավին անտեղյակ՝ գայլուկը իրեն տվել է օտար գայթակղությանը... Եվ հիմա կանգնել նայում է արածող նախրին, ու նրա խմոր մտքում շաղախվում է խուլ մի համրություն այդ հսկա, անձոռնի զանգվածների հանդեպ: «Ուրախություն է, թե փորձանք՝ իմ էսօրվա բախտն է»,— մտածեց նախրապանն ու դանդաղ շոլվեց տեղում: Իսկ գայլուկը պատկերի կախարդանքով հըմայված-շշմած, մարդկային դավի հանդեպ անգիտակից, անշարժացել ու չէր նկատում հավաքնին մոտեցող աղվեսի հղկված խորամանկությամբ թիկունքից մոտեցող նախրապանին: Բայց ինչքան էլ փոքր ու անփորձ, այնուամենայնիվ, գազան էր՝ գայլի արյունարբու ցեղից սերված, և նրա ինքնապաշտպանության բնազդը արթուն ու սթափ էր վտանգի նույնիսկ ամենաթույլ թրթիռի առաջ: Գայլուկը զգաց վտանգը, վիզը վտանգի կողմը թեքելն ու տեղից պոկվելը մեկ եղան, բայց այլևս ուշ էր. նախրապանը փութով քայլ արեց ու պատրաստ պահած պիջակը գցեց գայլուկի վրա:

Խուլ ինքնամոռացության մեջ նախիրն արածում էր: Աշնանային սառը քամին ալիքվում, խաղում էր հովտում, և կովերը սարսռացող մկանների մանրիկ դողով զգում էին, որ ձմեռը մոտ է: Անգահությամբ արածում էին, ազատ, անկաշկանդ, փչացնում ու իրենցից վանում էին մսուրային կյանքի բնկոտ միապաղաղության թախիծը: Եվ այդ ներփակ թմրության մեջ նախրապանի ու գայլուկի խա-



ՎԱՀԱՆ ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ղը նրանց կուշտ ուղեղի կողմից ընկալվում էր որպես մարդու և շան քոթոթի ծանոթ ու պարապ զվարճալիք:

Իսկ նախրապանը հրճվանքի մեջ էր: Կարծես գայլուկը իր հին ու հավատարիմ շունը լիներ. մտերմիկ տոնով հետը զրուցում էր, ինչ-որ բան հարցնում ու ինքն էլ պատասխանում էր, հետո նաև տիրոջ իրավունքով սաստեց, ասաց. «Դե լավ, լավ, ձենդ գլուխդ ես գցել, ոնց որ կեսդ կտրեցին»: Եվ ժպտաց, ժպտալով գոտին հանեց, պիջակի տուտերը հավաքեց, որ կապի... և հենց այդ ժամանակ էլ մայր գայլը թիկունքից խփեց...

Փափուկ՝ ինչպես թելի հսկա կծիկ, հուժկու՝ ինչպես ձիու քացի-հարվածը այնպես ճիշտ ու անակնկալ կպավ, որ նախրապանը տեղից թեթև թռավ ու գլորվեց թումբն ի վար: Եվ ներքևում, երբ թափը սանձեց ու շուռ եկավ, վերև նայեց, մայր գայլի փշոտված կերպարանքի առաջ արյունը սառեց նրա երակներում:

Նախրապանը անփորձ չէր, տարածու-

թյան վրա գել ու գազանի անվտանգ կերպարանք շատ էր տեսել, բայց այսպես դեմդիմաց, կատաղությունից փշոտված ու դաժան գայլ առաջին անգամ էր տեսնում: Եվ տեսնելու այդ պահը ժամանակի ընթացքից կարծես անջատվեց ու կանգ առավ: Վախի ուժեղ մի ալիք իրական ու սարսռեցնող խփեց ու ցնցեց նախրապանին: Մտքի հեռու մի ծայրում հնարավոր փախուստի թույլ, աղոտ մի ծրագիր խաղաց, բայց դա ծրագիր չէր՝ խեղդվողի ափի տակ փշրվող ջրի փրփուր էր: Ոտքը ետ դրեց անվստահ, կլոր, անկայուն քարը փախավ ոտքի տակից, ու նախրապանը տռվեց մեջքի վրա: Եվ հենց այդ պահին է գայլը ցատկեց: Ու մի երկվայրկյան հետո, իրեն լրիվ կորցրած նախրապանը կրծքի վրա զգաց գայլի տհաճ ծանրությունը: Սկզբում ձեռնամարտի նման մի բան էր. մեկը հարձակվում էր, մյուսը՝ պաշտպանվում: Բայց դա գայլի խաղն էր, ու գայլն այդ խաղը տանուլ չէր տալու: Մի խորամանկ ցատկ կատարեց նախրապանի վրայով, շեղեց նրա ուշադրությունը, ապա ճկվեց, ետ թռավ ու խփեց թիկունքի կողմից: Սուր ժանիքը պատռեց-անցավ հաստ շորերն ու դանակի պաղ շեղբի պես խրվեց-ակոսեց թիկունքը: Նախրապանը կծկվեց ու ճչաց ցավից, և ճիչը դեռ չմարած, գայլը զսպանակվեց ու ետ թռավ: Եվ ցատկի պատրաստ դիրքով ճկվեց ու ըսպասեց: Մտքի կենտրոնացման մի ակնթարթում նախրապանին թվաց, թե գազանն իր գլխին մուկ ու կատվի խաղ է խաղալու: Դժվարությամբ, մաքառելով, ինքն իր մեջ ուժ ու կող արեց, շտկվեց և ինչպես երազից պոկված պատկեր, մի նոր ու անակնկալ տեսարան բացվեց-հատակվեց աչքի առաջ, ունոր սուրպոզ մի կով նախրից առանձնացել ու թափով գալիս էր գայլի վրա: Քիվից կախված սառցալուլայի նման պար ու սուր ժանիքները բաց-պատրաստ գայլը պինդ ու աներեր կանգնեց կովի դիմաց: Գայլը մի քիչ շփոթված էր կովի վարքից. իր գայլային տոհմին թշնամի արար աշխարհի հանդեպ ունեցած մաղձը ժանիքների ծայրին կուտակել ու սպասում էր, թե հետո ինչ է անելու կովի հետ ու անփույթ տոհմից սերված այդ անմախը: Բայց հուժկու ու հաստատ այդ թափի մեջ իսկապես վախ չկար: Կովը թափով վրա եկավ, ու գայլը խույս տվեց, թռավ կողքի: Եվ նայեց-տեսավ, որ ձագը փախել, հեռվից նայում է: Կովը նորից վրա քշեց, ու գայլը դարձյալ խաբեց: Բայց գայլը սովոր չէր կովի առաջ նահանջելու: Չար ու դավադիր պտտվեց գլուխկախ, մի երկու կարճ ցատկով նենգորեն խճճվեց ինքն իր պտույտում, կովի շունչը մոտիկից զգաց, խույս տվեց ու ցատկեց հետևի կողմից: Բայց կովը շրջվեց ճիշտ ժամանակին, ու գայլը ետ թռավ: Թռավ ու պպզեց՝ ցատկի գնալու նոր ու խորամանկ ծրագրով: Կարճ մի պահ կարծես մտածում էր, հետո մտափոխ ու դիվոտված տեղից թռավ ու գրնաց նոր պտույտի: Բայց ափին զարկված ալիքի պես պտույտի մեջ նրա թափը հանկարծ փշրվեց. պոկած խոտի փունջը բերանից թերթիկ-թերթիկ թափելով, ծանր ու անշնորհք խնթխնթալով, թիկունքի կողմից վրա էր գալիս ուրիշ մի կով: Հետո իր անշարժ, դիտող վիճակից կարծես սթափվեց, խթխթաց ու խուլ մզզոցով արդեն գայլի կողմը շարժվեց նախիրը... Սա արդեն բացահայտ վտանգ էր, և գայլը նահանջեց: Հայացքը նախրի ու արդեն փախչող ձագի արանքում պտտելով, նահանջում ու դեռ սպառնում էր ժանիքներով: Բայց դա այլևս անփույթ սպառնալիք էր, որ ավելի շուտ ինքն իրեն սիրտ տալ էր նշանակում, քան թե նախրին՝ ահ: Հետո արդեն իր սպառնալիքին ինքն էլ չհավատաց ու շուռ եկավ, փախավ: Պուճուր, սուրպոզ կովը մինչև մոտակա բլուր գրնաց նրա ետևից ու գայլի վտանգը լրիվ վանելով՝ ետ եկավ: Եկավ խառնվեց նախրին ու սկսեց արածել: Բայց ամեն անգամ խոտ պոկելիս, գլուխը բարձր պահած, խոտի փունջը բերանում մի պահ անշարժանում, նայում էր բլուրի կողմն ու գայլի տհաճ վանող կերպարանքը չնշմարելով ապահով ու դանդաղ ծամում էր բերանի խոտը:

Կարծես մի անպատմելի ծանր գործից հոգնած ու հալից ընկած, ոտքերը մի կերպ քարշ տալով, նախրապանը գնում էր հացի տոպրակը վերցնելու, որ գայլուկին մոտենալուց առաջ թողել էր մասրենու թփի վերևում: Բայց թփին դեռ չհասած կանգնեց-անշարժացավ՝ տեղում: Նախրից ետ մնացած մի կով շուռ էր տվել տոպրակի պարունակությունն ու աշխարհից վերացած, ծամում էր հացի վերջին փշրանքները...

Հեռու մի տեղ ամպը որոտաց խուլ դղրդոցով: Էլի անձրև էր գալու:

ՍՏԵՓԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# Կատվի կատակը

Ճստիկ, պստիկ մի կատու
Հին մուշտակ է կարկատում,
Թաթին՝ ասեղ, թաթին՝ թել,
Ականջներին՝ մատիտներ՝
Մորթիները փաթաթել
Ու լաթեր է կտրատում:
Մկրատը՝ բութ, աչքը՝ սուր,
Դեմը հազար սարք ու սուրք,
Եվ դերձակ է, և վարպետ,
Բերեք այնպես կարկատի,
Որ գոհ մնաք վարպետից:
Այնպես եղավ, որ մի օր
Շունը մոլոր, գլխիկոր,
Հազիվ պրծած փորձանքից
Մոտը եկավ դերձակի
Ու աղաչեց, որ կատուն
Գույնը փոխի մուշտակի:
— Շան օրի եմ, այ կատու,
Մարդիկ ինձ չեն հավատում,
Ծեծում են ու անպատվում,
Անիծում են, գանգատվում,
Ինչ այս մուշտակն է հագիս,
Ոչ քուն ունեմ, ոչ հանգիստ:
Աստված պահի քո որդուն,
Գեշ է գույնը իմ մորթու,
Թեև շուն եմ անօթի,
Երբ տեսնում եմ ծանոթի,
Փոս եմ փնտրում, որ շուտով
Գետին մտնեմ ամոթից:
Կատուն գործը բոլորեց,
Ցանցառ բեխը ոլորեց,
Նայեց շանը, որ անտուն
Հալածված էր բոլորից,
Ու ճառ ասաց իմաստուն,
Որից շունը մոլորվեց:
— Թեև մուշտակ կարող եմ,
Մորթիդ ներկել կարող եմ,
Բայց չես շահի դու ոչինչ,
Կճանաչեն քեզ պոչից,
Պոչն է պատճառը չարի,
Պոչից բացի՝ ինչ չարիք:
Եթե պոչդ երկարի
Ու տարբերվի ներկայից,
Հազիվ թե քեզ ճանաչեն,
Վրադ գոռան ու հաչեն,
Արի մի պոչ ձկարեմ,
Թե հավանես՝ կկարեմ:
Շունը կատվին հավատաց,
Ու դեռ ճառը չավարտած,
Ոտքերն ընկավ վարպետի,
Որ նա դեղին կարպետից
Մազեր հանի ու հարմար
Մի պոչ կարի իր համար:
Խորամանկ էր մեր կատուն
Ու պոչ կարեց մի հատուկ,
Փմփուշ, դեղին ու երկար,
Ճաշակով ու ոսկեկար,
Երբ շան պոչին դա կարեց,
Պոչը իսկույն երկարեց:
— Տեսեք, ուրիշ եմ հիմա,
Ուրիշ շուն է ձեր դիմաց,
Պոչը դեղին ու երկար,
Ճաշակով ու ոսկեկար,
Թե հանդիպեմ ծանոթի,
Էլ չեմ փախչի ամոթից:
Ճստիկ կատվի կարծիքով
Շունը շատ էր պարծենկոտ,
Պոչը թեև երկարել,
Բայց հո կատուն էր կարել,
Այդ պոչից ինչ իմանան,
Թե շունն ուրիշ է դառել:
Շուտով շանը լարեցին,
Երկար պոչը վառեցին,
Խեղճ հիմարը հին պոչով
Անտառ հասավ մի շնչով
Ու հասկացավ, որ ոչինչ
Չի փոխվելու իր պոչից:
Թե ինչ շահեց մեր կատուն,
Ինքը նոր է նկատում:
Մի բան գիտի ճշմարիտ,
Շունը դարձավ թշնամի,
Թե կատու է նա տեսնում
Ուզում է մաշկը հանի:
Իր այդ հիմար կատակից
Դարձավ շանը բախտակից,
Ոչ օր ունի, ոչ արև,
Ոչ բարի լույս, ոչ բարև,
Երբ շան անունն է լսում
Կուչ է գալիս սարսափից:

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



# ՀԱՅ ԳԻՏՆԱԿԱՆԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ

Անհիշելի ժամանակներից մարդիկ իրենց նպատակների համար սկսել են օգտագործել մետաղները: Նախ յուրացվել են բնածին պղինձը, ոսկին, արծաթը, երկաթը, հետո նաև ձուլվածքները:

Մեր թվարկությունից 3—4 հազար տարի առաջ հայտնաբերվել է պղնձի և անագի ձուլվածք բրոնզը, որը դարձել է մի ողջ դարաշրջանի խորհրդանիշը: Հայաստան աշխարհը նույնպես եղել է մետաղագործության զարգացման օջախներից մեկը: Այդ մասին են խոսում Մեծամորի շրջակայքում հայտնաբերված քսանից ավելի հնադարյան ձուլարանները իրենց հնոցներով և հնէաբաններին շատ բան պատմող թափոններով:

Սակայն հազարամյակներ շարունակ անվիճելի է համարվել, որ կարծր նյութերից ձուլվածքներ ստանալու համար նախօրոք անհրաժեշտ է ելանյութերը հալեցնել ու դարձնել հեղուկ: Բայց այժմ **Մերժանովը (Ալեքսանդր Գրիգորի Մերժանյան)** և նրա օգնականները անհերքելի կերպով ապացուցեցին, որ այդ օրինաչափությունը բացարձակ չէ: Հետևաբար բարձրաստիճան հնոցները և վառարանները, որոնցում դարեր շարունակ փոթորկվել են կրակե բոցերը, շուտով իրենց տեղը կզիջեն ռեակտորներին: Նրանցում կօգտագործվի առանց բոցի, այսպես կոչվող «կարծր կրակը»: Ահա, թե ինչ է պատմում այդ մասին քիմիական գիտությունների դոկտոր Զարկովը.

— **ԽՍՀՄ** գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտում, ուսումնասիրվում էին այրման հետ առընչվող տեսական խնդիրները: Սովորաբար վառվելու ընթացքում փորձարկվող ելանյութերը քայքայվում են հասնելով գազային վիճակի, իսկ դոկտոր Մերժանովն իր օգնականների առաջ խնդիր էր դրել գտնել այնպիսի նյութեր, որոնք այրվելուց գազեր չեն անջատում: Մեկը մյուսի հետևից փորձարկվեցին զանազան նյութերի խառնուրդներ, բազմապիսի հարաբերություններով: Վերջապես վերցրին նաև բորի և տիտանի համատեղ մամլած փոշեխառնուրդի հաբ, որին միացրին էլեկտրական օղակալար: Երբ էլեկտրահոսանք հաղորդեցին օղակալարին, ապա նրա հաբի հետ շփման կետից արագ տարածվեց պայծառ ու լուսավորվող ճակատ:

Փորձարարները մի քանի անգամ կրկնեցին փորձը, հրճվելով գեղեցիկ լուսային երևույթով, իսկ հետո սկսեցին քննել, թե ջերմային ազդակի հետ կապված, ինչպիսի փոփոխություններ են տեղի ունեցել փոշեխառնուրդում: Նրանք համարյա պատահաբար ուշադրություն դարձրին այն բանի վրա, որ փոշեխառնուրդային հաբը, ոչ թե հալվել ու ձևափոխվել է, այլ պահպանել է իր նախկին ձևը, սակայն դառնալով ավելի կարծր և ամուր:

Քննությունները պարզեցին, որ հաբի կազմն իրենից ներկայացնում է բորի և իր կպչուն հատկությամբ հայտնի տիտանի ձուլվածք: Ապշեցուցիչ էր նման արդյունքը, քանի որ մինչ այդ հայտնի էր, թե բորի և տիտանի ձուլվածք ստանալու համար անհրաժեշտ է նրանց դժվարահալ փոշիների խառնուրդը տաքացնել հատուկ վառարաններում մինչև 15000 աստիճան և պահել երկու ժամից ոչ պակաս ժամանակ: Բայց ահա այդ նույն ձուլվածքը Մերժանովի լաբորատորիայում ստացվել էր ընդամենը մի քանի

վայրկյանում: Հարկավ, սկզբում թվում էր, թե ստացված արդյունքը պատահականություն է, ինչպիսիք չեն բացառվում գիտահետազոտական փորձերի ընթացքում: Այս կասկածելի վերաբերմունքը, թվում էր, թե հիմնված է առողջ դատողության վրա, հիրավի, եթե ստացվել է ձուլվածք, ապա որտեղ էր ավանդական բոցը: Չէ որ մետաղագործության հասկացողությունը սերտորեն կապված է հընոցի ջերմության և մետաղախառնուրդի հրահեղուկի հոսքի հետ:

Այդ առիթով ինքն Ալեքսանդր Մերժանովն ասում է.

— Մասնագետի տեսակետից պարտադիր չէ, որ կրակը բոց առաջացնի: Այրման պրոցեսը բարդ քիմիական երևույթ է, և եթե այդ ռեակցիայի ելանյութերը հալչում կամ անցնում են գազային վիճակի, ապա հեշտությամբ և արագ մըտնում են փոխազդեցության մեջ, իսկ եթե նյութերը մնում են կարծր, ապա սովորական պայմաններում պրոցեսն ընթանում է անչափ դանդաղ և մնում է կես ճանապարհին: Այլ խոսքով ասած, սովորական պայմաններում առանց բոցի կրակն, այսինքն «կարծր կրակը» մխում է այնքան աննկատ, որ մենք այն չենք նկատում, կամ էլ հաճախ ուղղակի հանգչում է: Սակայն գոյություն ունի նաև 3-րդ տարբերակը, երբ խառնուրդի բաղադրիչների փոխազդեցության հետևանքով անջատվում է բավականին ջերմություն: Այդ դեպքում կարծր նյութերը ձուլող ռեակցիան կարող է ինքն իրեն պահպանել, դրա համար նրան բավական է միայն սկզբնական ջերմային խթան, բայց հետո այն ինքնատարածվող է: Այդ է պատճառը, որ այրման այդպիսի ռեակցիան ստացել է «ինքնատարածվող բարձրաստիճան սինթեզ» կոչումը: Պետք է նշել, որ դոկտոր Մերժանովին և նրա օգնականներին հարկավոր եղան բազմաթիվ փորձեր, չափումներ, հաշվարկներ պարզելու համար, թե ինչ է տեղի ունենում փոշեխառնուրդում, երբ նրան հաղորդում են ջերմային խթան: Այդպիսով քիմիայում ստեղծվեց մի նոր բաժին՝ առանց գազերի այրման տեսությունը:

Մինչև տեսաբանները գլուխ հանեցին ռեակցիայից, որն անվանվեց «կարծր կրակ», Մերժանովի խմբի հայտնագործությամբ հետաքրքրվեցին գործնական արտադրությամբ զբաղվողները: Իրականում մի շարք թանկարժեք ձուլվածքներ ստանալու ավանդական եղանակի շըղթայից հնարավոր էր դարձել անջատել մի ողջ օղակ՝ բարձրաստիճան վառարանները: Ձուլման պրոցեսը զգալիորեն արագացավ և էժանացավ, տնտեսվում էր մեծ չափով էներգիա, որը նախկինում ծախսվում էր վառարաններում բարձր ջերմաստիճան ստեղծելու և պահպանելու համար: Միաժամանակ զգալիորեն բարելավվեց ստացվող արտադրանքի որակը: Խառնուրդի մեջ առաջանում է մինչև 4000 աստիճան ջերմություն, որն անհասանելի էր վառարաններում, իսկ այդ պատճառով «կարծր կրակը» այրում է ելանյութում գտնված ողջ կողմնակի խառնուրդները, այսինքն՝ տեղի է ունենում ստացվող ձուլվածքի ինքնամաքրում: Ինչպես տեսնում եք, կրակը հանդես է գալիս իր նոր՝ ոչ թե ոչնչացնողի, այլ նորը կառուցողի դերում, առաջացնելով նոր ու հրաշալի ձուլվածքներ: Այսօր, ժամանակակից մեքենագործները, մետաղագործները, երկրի ընդերքը ներթափանցողներն առանց դժվարահալ ձուլվածքների չեն կարող գլուխ հանել, իսկ Մերժանովի եղանակը հնարավոր է դարձրել ստանալ 800-ից ավելի գործնական արժեք ունեցող անհրաժեշտ ձուլվածքներ: Շնորհիվ այս եղանակի՝ միայն Պոլտավա քաղաքի արհեստական ալմաստների գործարանը միլիոնավոր ռուբլիներ է տնտեսել: Նորագույն տեխնոլոգիան յուրացվել է նաև Կիրովականի բարձրաստիճան ջեռուցիչների գործարանում, այդ եղանակով դիսիլիցիդ մոլիբդենից ստացվող էլեմենտները կրկնակի անգամ ավելի ուշ են շարքից դուրս գալիս, քան նախորդները, և պատրաստվում են անհամեմատ արագ ու որակյալ:

«Կարծր կրակի» մյուս առավելությունն այն է, որ եղանակը ոչ միայն ստեղծում է նոր նյութեր, այլ նաև նրանց ձևավորում է՝ արտադրանքին տալով ցանկացած ձևը: Այս եղանակով հնարավոր է դարձել նաև սովորական գործիքների մակերեսները պատել պաշտպանական բարակ շերտով, որն, անշուշտ, զգալիորեն կավելացնի դրանց ծառայության ժամկետը: Առանց չափազանցության կարելի է ասել, որ հայ գիտնականի այս հայտնագործությունը մեր դարի խոշորագույն գյուտերից մեկն է:

Վարդան ԽԱՉՈՅԱՆ
Կենսաբանական գիտ. թեկնածու

ԳՈՒՐԳԵՆ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## Պապի գոտին

Եվ մայիսյան
Պայծառ տոնին
Երբ ծաղիկն էր
Թափել հոնին,
Ծոռը եկավ
Ասավ. «Նանի,
Մեր մեծ պապի
Գոտին հանի:

Թող չքերթին
Ելնեմ ոտի՝
Կապած քաչի
Ամուր գոտի:

Չէ՞ որ պապը
Բեռլին գնաց՝
Այդ աստղակուռ
Գոտին հագած:

Թող իմանան
Մարդիկ դաժան,
Որ ես ծոռն եմ՝
Պապին արժան:

Որ մի օր էլ
Կելնեմ ոտի՝
Պապիս նման
Կապած գոտի»:

Նկարը՝ ՀՈՎՀԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ

## Վառելանյութ բենզինի և ջրի խառնուրդից

Մոտ հարյուր տարի առաջ գերմանացի ինժեներ Օտտոն ներքին այրման շարժիչների համար օգտագործվող բենզինի հետ ջուր խառնելու միտք հայտնեց: Այս գաղափարը հետագայում կյանքի կոչվեց, և Օտտոն արտոնագիր ստացավ:

Մեր դարի քսանական թվականներին անգլիական ավտոբուսները որպես վառելանյութ կիրառում էին բենզինի և ջրի խառնուրդները: Այսօր արդեն ճապոնական մամուլում տպվում են հաղորդումներ այն մասին, որ շատ մոտ ապագայում Ճապոնիայի ավտոլիցքավորման կայաններում լինի երեսուն տոկոս ջուր և յոթանասուն տոկոս բենզին պարունակող վառելանյութ:

Հնարավո՞ր է ջուրը այրել բենզինի հետ: Հայտնի է, որ բենզինը ածխածնի ատոմների տարբեր պարունակություն ունեցող հեղուկ ածխաջրածինների խառնուրդ է: Այրման ժամանակ հիշյալ բենզինը փոխարկվում է հիմնականում ջրի և ածխաթթու գազի: Սակայն լինում են նաև թերայրման դեպքեր, երբ արտազատուկների հետ մթնոլորտ է շպրտվում խիստ թունավոր ածխածնի օքսիդը կամ, ինչպես ընդունված է ասել՝ շմոլ գազը: Պարզվում է, որ ջուր պարունակող բենզինի այրման ժամանակ բացառվում է շմոլ գազի գոյացումը: Սա այն դեպքում, երբ խառնուրդում ջրի քանակը չի անցնում տասը տոկոսից: Ջուր պարունակող վառելանյութը ունի մեկ ուրիշ առավելություն ևս: Խնդիրն այս դեպքում առնչվում է այսպես կոչված վառելանյութի օկտանային թվին, որը վառելանյութի հիմնական չափանիշներից մեկն է՝ որքան մեծ է այդ թիվը, այնքան լավն է վառելանյութը: Մինչև քսան տոկոս ջուր պարունակող բոլոր տեսակի բենզինների օկտանային թիվը բարձրանում է:

Բայց չէ՞ որ ջուրը բենզինում չի լուծվում, կհարցնեն շատերը: Եվ եթե դա այդպես է, էլ ինչ խոսք բենզին-ջուր խառնուրդների մասին: Իրոք, դա այդպես է: Ջուրը բենզինին խառնելիս գոյանում է իրար մեջ չլուծվող երկու հեղուկներից կազմված մի համակարգ, որտեղ բենզինը՝ իր փոքր խտության պատճառով միշտ կգտնվի ջրի շերտերի վրա: Կան սակայն հատուկ նյութեր՝ էմուլգատորներ, որոնք լինելով մակերնութային ակտիվ նյութեր, փոքրացնում են բենզինի և ջրի միջև եղած միջֆազային մակերնութային լարումը, դրանով իսկ նպաստում ջրի և բենզինի կաթիլների փոխներթափանցմանը: Էմուլգատորները մեծ մասամբ ճարպեր են և կամ օճառներ, սպիտակուցներ, տարբեր տեսակի դոնդողներ:







Նկարը՝ ԳԱԳԻԿ ԻՍԱՀԱԿՅԱՆԻ

Բենզին-ջուր խառնուրդում որպես էմուլգատոր կիրառվում են հիմնականում օլեինաթթուն և նրա աղերը, որոնք օճառանման նյութեր են, ինչպես նաև ճարպային սպիրտների ածանցյալներ: Էմուլգատորի քանակը մեծ մասամբ չի անցնում ընդհանուր խառնուրդի մեկ տոկոսից: Թվում է, թե լուծվեցին բոլոր հարցերը: Էմուլգատորը կա և խնդրեմ՝ ջուր-բենզին էմուլսիոն համակարգը պատրաստ է այրման համար: Այստեղ է, որ ծագում է ամենամեծ պրոբլեմը: Չէ՞ որ բոլոր տիպի էմուլգատորները բացասաբար են անդրադառնում այրման խցում ընթացող մի շարք պրոցեսների վրա՝ ուժեղանում է գլանի պատերին նստող այրուքը, ավելանում է շարժիչի ընդհատումներով աշխատանքը: Մյուս կողմից՝ որպես էմուլգատորներ կիրառվող նյութերը չպետք է լինեն թունավոր և մետաղների կոռոզիային նպաստող:

Ի՞նչ է արված այս ուղղությամբ: Սկզբնական շրջանում խնդիր դրվեց էմուլգատորների քանակը հասցնել նվազագույնի՝ վառելանյութի քանակի կես տոկոսից ոչ ավելի: Դա ապահովեց վառելանյութի այրմանը վերագրվող որոշ պահանջներ:

Հիշյալ խառնուրդներում, որպես անտիդետոնատորներ, հաջողությամբ կիրառվում են տարբեր տեսակի ֆենոլներ՝ պիրոկատեխին, պիրոգալոլ, ինչպես նաև հիդրոխինոն: Բավական է միայն այն փաստը, որ վառելանյութին մինչև երեք տոկոս պիրոկատեխին ավելացնելիս օկտանային թիվը մեծանում է ինը միավորով:

Ինչպիսի ուղղություններով էլ որ կատարվեն հիշյալ խնդրին առնչվող աշխատանքները, պարզ է մի բան. ջրի ավելացումը բենզինին նպատակահարմար է և շահավետ: Վառելանյութը դառնում է առավել մատչելի և մեծապես ապահովվում է շրջակա միջավայրի մաքրությունը:

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ՕՊՏԻԿԱԿԱՆ ԿԱՏԱԿԵՐԳՈՒԹՅՈՒՆ



Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Սևի սիրուն Մ. Ութը իջավ անդնդախոր ձորը և ննջեց որպես քնած գեղեցկուհի: Լ. Ույսը, որը «հուր հեր ուներ, ապա թե բոց ուներ մորուս, և աչքունք էին արեգակունք», այդ ընթացքում հեռվից նկատեց Մ. Ութի ռոմանտիկական ստվերը, սիրահարվեց և լույսի արագությամբ սլացավ դեպի նա:

Մ. Ութը վախվորած թաքնվեց այրերի մեջ, բայց Լ. Ույսը հետամուտ եղավ նրան, գտավ և բացականչեց.

— Այդ ես եմ, Ույսը՝ ձգոր և քաջարի: Սիրում եմ քեզ:

Մ. Ութը էլի փախավ, մտավ քարերի ծակուծուկերը, բայց Լ. Ույսն աննկուն կամքով և չթուլացող արագությամբ կըրկին հայտնաբերեց նրան և մեղմացած ձայնով ասաց.

— Աչքերդ բարձրացրու, նայիր ինձ, սիրելիս:

Մ. Ութը ամոթխածաբար բարձրացրեց սև աչքերը, մինչև հոգու խորքը այրվեց Լ. Ույսի հրեղեն հայացքից, և նրանք վայրկենապես գրկախառնվեցին: Գրկախառնվեցին և ամուսնացան: Ամուսնացան և ըստ կարգի բարեփոխեցին իրենց անուն-ազգանունները: Լ. Ույսը վերանվանվեց Լույս, Մ. Ութը վերանվանվեց Մութ:

Լույսը և Մութը կայծակնային արագությամբ ունեցան չորս երեխա: Առաջինը Արեգակն էր, որը շատ էր նման իր հորը: Երկրորդը՝ Մշուշն էր, որը նման էր ավելի շատ հորը, ավելի քիչ՝ մորը: Երրորդը՝ Ստվերն էր, որը շատ էր նման մորը: Չորրորդը՝ Աղջամուղջն էր, որը հավասարապես նման էր և՛ հորը, և՛ մորը:

Արեգը րոպե առ րոպե մեծանում, խոշորանում էր, արդեն չէր կարողանում տեղավորվել Երկրի վրա և հրաբխի պես կրակ արտաշնչելով, ծնողներին ասաց.

— Ներեք, բայց ես այստեղ մնացող չեմ: Ինձ ասպարեզ է պետք:

Եվ առանց պատասխանի սպասելու, դեռ շշմած ծնողների աչքերի առաջ թռավ դեպի երկինք և յոթերորդ հարկում աշխատանքի անցավ, որպես մշտական գործող ջերմաէլեկտրակայան-հնոցապան:

Լույսը և Մութը, որոնք շատ էին սիրում իրենց առաջնեկին, լարեցին երկրագունդը և սկսեցին պտտվել Արեգի շուրջը:

— Ջագուկս, հոգիս կերար,— ողբում էր Մութը:

— Տուն արի, մորդ խղճա, ով աչքի լույս,— շողահեռագրում էր նրան հայրը:

Սակայն, Արեգը նրանց ուղարկում էր միայն ոսկեզօծ երկար բացիկներ և չէր ընդառաջում ծնողների աղերսներին:

Այդ որ տեսավ, Մշուշը շշնջաց.

— Ես պակա՞ս եմ Արեգից: Ես էլ այստեղ մնացողը չեմ:

Ու նստեց փայտոն, որ գնա Լոնդոն:

Ճանապարհին նրա ետևից հասավ Լույսը և հանդիմանեց նրան.

— Այդ ո՞ւր... այ տղա:

— Թող, էլի, պա,—ասաց նրան Մշուշը,— թող գնամ մի կարգին օտար լեզու սովորեմ:

Էհ, որտե՞ղ է տեսնված, որ ծնողը արգելք լինի ուսումնատենչ զավակի երազանքներին:

— Գնա,— զիջեց Լույսը,— գնա, բայց մեզ չմոռանաս:

Մշուշը ծնողներին չմոռացավ: Ժամանակ առ ժամանակ նա օդ էր բարձրանում և միջերկրային տարածքում, որպես ամպ, նայում էր վերևներից և գոլորշիանձև կարոտն էր առնում ու անձրևակերպ կարոտն էր տալիս անցնող ու դարձող Մութ ու Լույսին, ինչպես և իր քույրերին՝ Ստվերին ու Աղջամուղջին:

Ստվերը եղբայրների հանդգնությունից սիրտ առավ, հետո լեզու առավ և սկսվաց.

— Ես ուզում եմ դառնալ կինոդերասանուհի:

Ուզելը լավ բան է, բայց տաղանդ է պետք: Դժբախտաբար Ստվերը չուներ այդ լուսավոր հատկությունը: Նա հաշտվեց իր բախտի հետ և ամուսնացավ կինո ցուցադրող ապակու հետ:

Երբ սրտները ուզում էր, Լույսը և Մութը այցելում էին իրենց դստերը, որ ապրում էր միսենյականոց, բայց շատ ընդարձակ կինոդահլիճում: Ստվերը էկրանից նրանց հետ շատախոսում էր, բանսարկում էր այնքան, որ մինչև սեանսի ավարտը ծնողները արդեն կշտացած էին լինում նրանից:

Մնաց Աղջամուղջը, որն ամեն երեկո կարմրատակած անհետանում էր և մինչև հաջորդ առավոտը բացակայում էր: Ամեն առավոտ նրան սպասում էր նույն հանդիմանությունը.

— Այդ ո՞ւր էիր կորել, աղջի Մուղջ:— Մայրն էր:

Աղջամուղջը շիկնում էր ամոթից՝ հասկանալով մոր ակնարկը: Եվ ապաստան էր գտնում հոր գրկում: Հայրը խղճում էր նրան և չէր վանում իր գրկից: Աղջիկը սակայն խելքի չէր գալիս: Երեկոյան էլի խտղտում էր հորիզոնում և կորչում էր, ով գիտե՝ ուր, ով գիտե, ում մոտ:

Ծնողները, թեև համոզված էին, որ մի քանի ժամից դարձյալ կհայտնվի, բայց միևնույն է՝ անհանգստանում էին: Եվ մի անգամ Լույսը Մութին ասաց.

— Այ կնիկ, գնա գողտուկ տես, այդ... լեզուս չի պտտվում... այդ... այդ անառակը ում հետ է կապված:

Լույս հայրիկը «անառակ» բառը, իհարկե, չէր օգտագործում այն առումով, որ Աղջամուղջն անգիր չգիտի Խնկո Ապոր, Կռիլովի և Լաֆոնտենի առակները:

Նույն օրը, իրիկնամուտին, հենց որ Աղջամուղջը սովորականի նման չքացավ, Մութը հետևեց նրան։

Մի քանի ժամ անց մայրը հայտնվեց, մտավ քարայրը, Լույսին նշան արեց, որ հետևի իրեն և զեկուցեց իր հետախուզական օպերացիայի մասին.

— Այ մարդ, խեղճ աղջկա մեղքի տակ էինք ընկնում։ Դու էն ասա, ուրիշ երկրներում քեզ նման լույս էլ կա, ինձ նման մութ էլ կա։ Խեղճ աղջիկը նրանց այցելում է շուրջերկրյա տուրիստական ուղեգրով, առավոտները հույս է տալիս ապրող էակներին, երեկոները նրանց հանգստացնում է։ Ահա թե ինչպիսի լավ աղջիկ ունենք։

Նրանք դուրս եկան քարայրից և Լույսը դիմեց իր դստերը.

— Աղջի, Մուղջ, արի քեզ ամուսնացնենք, պրծնենք։

— Ես չեմ ուզում ամուսնանալ,— պատասխանեց Աղջամուղջը՝ կասկարմիր կտրելով,— բավարարված եմ նրանով, որ ուղեգրել եմ բոլոր երկրներին։ Ես լավ եմ զգում, երբ հույս եմ տալիս բոլոր ապրողներին և մխիթարում նրանց։

— Լավ...— Մութը վերջապես թիկունք կանգնեց Աղջամուղջին,— այս մեր մի զավակն էլ թող այսպիսին լինի։

Եվ այդպես համերաշխ ապրում էին Լույսը և Մութը. Արեգակը՝ երկնքում, Մշուշը՝ Լոնդոնում, մեն-մեն էլ իրենց գլխավերևում ամպի տեսքով։ Ստվերը էլի նույն կինոթատրոնում էր, Աղջամուղջն էլ մտել էր Միջազգային կարմիր խաչի կազմակերպության մեջ որպես գթության քույր։

— Մի կարգին լուսանկար էլ չունենք երեխաների հետ,— հառաչելով ասաց Մութը իր ամուսնուն։

Լույսը կնոջ իղձն անկատար չթողնելու համար հրավիրեց լուսանկարչին և պատվիրեց նրան.

— Այնպես լուսանկարիր, որ զգացվի Արեգակի ներկայությունը։ Հետո դա թող լինի վաղ առավոտյան կամ երեկոյան, երբ Աղջամուղջը մեզ հետ է լինում։ Հետո այնպես արա, որ Ստվերն էլ լինի լուսանկարի վրա։ Եվ պարզ է՝ ես էլ իմ կնոջ հետ։— Եվ ավելացրեց,— քանի դեռ կյանք կա այս աշխարհի վրա, թող լինի նաև մեր լուսանկարը։

Եվ այսպես լուսանկարչական ապարատի մեջ ամփոփվեց այս օպտիկական կատակերգությունը։

# ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԱՆԿՅՈՒՆ

● Ֆրանսիացի հայտնի ֆիզիկոս Ամպերը տնից դուրս գալով, դռան վրա կպցնում է մի թուղթ, որի վրա գրել էր. «Ամպերը տանը չէ, նա կվերադառնա գիշերը»։

Երբ մի ժամից հետո գալիս է և կարդում իր գրածը, անմիջապես թողնում, հեռանում է և միայն ուշ գիշեր տուն վերադառնում։

● Ամերիկացի նշանավոր գրող Մարկ Տվենը ճամփորդում էր գնացքով։ Հսկիչը մտնում է խցիկը և տոմս է պահանջում։ Մարկ Տվենը երկար փնտրում է ու չի գտնում։

—Մի անհանգստացեք, պարոն Տվեն,— ասում է հսկիչը,— ոչ մի նշանակություն չունի ձեր տոմսը կգտնեք, թե ոչ։

— Ինչպե՞ս թե նշանակություն չունի,— սրտնեղած պատասխանում է գրողը,— ես ինչպես պիտի հիշեմ, թե ուր եմ գնում։

● Ֆրանսիացի հռչակավոր գրող Լաֆոնտենը իր ընկերոջ՝ Հերվարի կազմակերպած ընդունելության ժամանակ նկատում է մի երիտասարդի, որն իրեն շատ է դուր գալիս։ Լաֆոնտենը դիմում է ընկերոջը.

— Չե՞ք ասի, ով է այս երիտասարդը։

— Մի՞թե չեք ճանաչում,— ապշած պատասխանում է Հերվարը,— չէ՞ որ ձեր որդին է։

— Անշուշտ, անշուշտ,— ուրախացած բացականչում է Լաֆոնտենը,— ժողովրդի մեջ տարածված է այն կարծիքը, թե ես ցրված եմ, բայց ես համոզված էի, որ լավ ճանաչում եմ այդ երիտասարդին...

● Ամերիկացի նշանավոր գյուտարար Էդիսոնը երկար ճանապարհորդությունից ուժեղ գլխացավով և գլխապտույտով վերադառնում է տուն։ Հրավիրված բժիշկը պարզում է, որ գնացքով երկար ճանապարհորդությունը Էդիսոնը կատարել էր ոտքի վրա, շոգեքարշի խցիկի պատին հենված։

— Իսկ ինչո՞ւ չխնդրեցիր դիմացիդ նստածին՝ տեղը քեզ զիջեր,— հարցնում է կինը։

— Չէի կարող,— հանգիստ պատասխանում է Էդիսոնը,— խցիկում մենակ էի...

**Ֆրանսերենից թարգմանեց**
**ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ**

## ԺԱՄԱՆՑ




1. Պատմական Հայաստանի առաջին մայրաքաղաքը: 2. Թագավորի կամ իշխողի անմիջական շրջապատը հին Հայաստանում: 3. Հայկական օրացույցի 29-րդ օրվա անունը: 4. Սառը զենքից պաշտպանվելու համար օգտագործվող հնագույն զինատեսակ: 5. Գյուղ Արթիկի շրջանում, որտեղ կառուցված է ճարտարապետական հուշաձան-կոթող: 6. Մեծ Հայքի Աղձնիք նահանգի 10-րդ գավառը: 7. Մեսրոպ Մաշտոցի ծննդավայրը: 8. Հին հայկական գրանյութ: 9. Միջնադարի հայ մեծ բանաստեղծ: 10. Ուրարտական թագավոր: 11. Քրիստոնեական տաճարի կառուցվածքային տարր: 12. Լիճ պատմական Հայաստանում: 13. 13-րդ դարի վերջի և 14-րդ դարի սկզբի հայ մեծ մանրանկարիչ, քանդակագործ, ճարտարապետ: 14. Մեծ Հայքի նահանգներից: 15. Նարեկացու «Մատյանի» ժողովրդական անվանումը: 16. Հայոց թագավոր: 17. Հյուրընկալության աստվածությունը հին հայկական դիցաբանությունում: 18. Հայկական էպոսի հերոսներից: 19. Միավորված հայկական իշխանություն Արցախում (10—16-րդ դդ.): 20. Գավառ Մեծ Հայքի Տուրուբերան նահանգում: 21. Գետ Շիրակի դաշտավայրում: 22. Հայկական էպոսի հերոսներից: 23. Ճարտարապետական հուշարձան-կոթող Ծաղկաձորում: 24. Հնագույն ամրոց-բնակտեղի Արարատյան դաշտավայրում:

Կազմեց՝ ՎԱՆԻԿ ԱԼԵՔՍԱՆՅԱՆԸ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 7. 89



*Հանձնված է արտադրության 03.05.89 թ.: Ստորագրված է տպագրության 17.07.89 թ.: ՎՖ 02258: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61312: Պատվեր՝ 639: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 03.05.89 г. Подписано к печати 17.07.89 г. Формат 70×100 1/16. ВФ 02258. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печат. 2,92 усл. печ.листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 61312. Заказ 639. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

Շապիկի 1-ին էջին՝ գործ՝ Արմեն ՀԱՃՅԱՆԻ



Լուսանկարը՝ ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՆՅԱՆԻ

| «ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ | 10-ից 5-ը | 5-ից 12-ը | 12-ից 7-ը | 4-ից 11-ը |
|---|---|---|---|---|
| | 1—8 | 7—8 | 3—4 | 8—3 |
| | 11—6 | 6—1 | 1—8 | 5—12 |
| | 2—9 | 9—10 | 10—5 | |
| | 12—7 | 7—6 | 6—1 | |
| | 8—4 | 4—9 | 9—10 | |
| | | | 7—2 | |

**Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա.։

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.